

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ՓՈՔՐԻԿ ՀԵՐՈՍՆԵՐԸ

**Լրացավ ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի տարած հաղթանակի 20 տարին։**

**Հայրենական մեծ պատերազմի օրերին իրենց ծնողների, ավագ եղբայրների ու քույրերի հետ միասին մեր հայրենիքի ազատության համար հերոսաբար պայքարում էին նաև պիոներները։ Շատ են նրանք, մեկը մեկից խիզախ, մեկը մեկից հայրենասեր։ Մեր ամսագրի այս համարում մենք կպատմենք նրանցից մի քանիսի մասին։**

## ԳՆԴԻ ԱՂՋԻԿԸ

Գիշերային անդորրության մեջ ծվարել էին ճամբարային վրանները։ Պիոներները խոր քնի ու քաղցր երազների մեջ էին։ Սպիտակաբուն կեչիների սաղարթներում արդեն սկսվում էր լուսադեմի մեղմ քամին։ Ավելի ու ավելի հաճախ էր լսվում արթնացող թռչունների կանչը։ Խաղաղ քնով քնած էր և Սվետլանան՝ չորրորդ ջոկատի ամենափոքրիկ ու թովռուն աղջիկը։ Նա բոլորից անհամբերությամբ էր սպասում այդ օրվան. չէ՞ որ առավոտյան պետք է տեղի ունենային սպորտային մրցումներ, որոնց մասնակցելու էր նաև ինքը...

Սվետլանան հանկարծ վեր թռավ ահավոր աղմուկից ու մոտորների հնդյունից։ Ճամբարի վրայով սուրում էին անհամար ինքնաթիռներ՝ սև ամպերի նման ծածկելով այգաբացի երկինքը։ Մինչև Սվետլանան ուշքի կգար իմանալու, թե ինչ է կատարվում, պիոներական վրանների վրա թափվեցին ֆաշիստական ավազակների առաջին ռումբերը։

Պատերա՜զմ...

Այսպես սկսվեց 1941 թվականի հունիսի 22-ը։

Նահանջողների մի մեծ խմբի հետ Սվետլանան քայլեց դեպի արևելք, դեպի մեր հայրենիքի խորը թիկունքը։ Հինգ ամիս տևող կիսաքաղց օրերից ու դառը տանջանքներից հետո, փոքրիկ աղջիկը վիրավոր վիճակում ապաստան գտավ հրաձգային մի գնդում։ «Գնդի աղջիկ», — այսպես սկսեցին կոչել նրան։ Սվետլանան օգնում էր խոհանոցի մարդկանց, լվանում ու կարկատում էր զինվորների սպիտակեղենը, իսկ երբ իջնում էր երեկոն, երգում էր մարտիկների համար։

Անցան ամիսներ։ Գունդը պատրաստվում էր մեկնել մարտական գործողությունների։ Սվետլանային չէին ուզում տանել, որովհետև նա փոքր էր, նոր էր լրացել նրա տասներեք տարին։ Սակայն բարձրահասակ ու սլացիկ մարմնով աղջիկը երկու-երեք տարով ավելի մեծ էր երևում և դրա շնորհիվ նա կարողացավ մեղմել գնդի հրամանատարի համառությունը։

1942 թվականի ամռանը Սվետլանան ընկավ գվարդիական այն զորամասը, որը պաշտպանում էր Ստալինգրադի մատույցները։ Սկսվեց Սվետլանայի ռազմաճակատային կյանքը։ Մարտական խմբերի հետ պիոներուհին հաճախ հետախուզության էր գնում։ Մի անգամ թշնամին ականանետային ուժեղ կրակ էր կենտրոնացրել մեր դիրքերի վրա։ Ամենուրեք պայթում էին նաև հրանոթային արկեր։ Այդ ծանր վիճակից դուրս գալու համար պետք էր հետախուզել հակառակորդի ուժերի դասավորությունը և լռեցնել կրակակետերը։ Երկու անգամ մեր հրամանատարությունը հետախույզներ ուղարկեց, սակայն երկուսն էլ անհաջող անցան։ Այս անգամ այդ դժվար գործը հանձնարարեցին Սվետլանային։ Նա հագավ իր կարճ շրջազգեստը, մազերին սպիտակ ժապավեն կապեց և համարձակ առաջ գնաց։ Նրա կողքից, փոսի միջով սողալով առաջ էր գնում մյուս հետախույզը՝ ռադիստ Զինան։ Նրանք ընդհուպ մոտեցան թշնամու խրամատներին։ Սվետլանան զգուշորեն դիտում էր շրջապատը, ապա արագ նետվում փոսի մեջ և ամեն ինչ հայտնում ռադիստին, իսկ սա անմիջապես հաղորդում էր մեր հրամանատարությանը։

Հաջողությամբ կատարելով մարտական առաջադրանքը, Սվետլանան վերադարձավ յուրայինների մոտ։ Պարզվեց, որ նա բնածին հետախույզի հատկություն ունի և լավ աչքաչափ։ Հենց նույն օրը, Սվետլանայի տեղեկությունների համաձայն

ՄԱՅԻՍ
№ 5 1965 Թ.

# ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ, ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

մեր հրետանիները ոչնչացնող կրակ բաց արին ֆաշիստական կրակակետերի վրա և լռեցրին դրանք: Մինչև աշնան կեսերը Սվետլանան վեց անգամ հետախուզության գնաց՝ մեծ օգուտ տալով յուրայիններին: Սակայն յոթերորդ անգամ կատարվեց սարսափելին...

Աշնանային սառնաշունչ քամին փչում էր տափաստանով մեկ: Թշնամին նոր ուժեր էր հավաքել շեշտակի հարված հասցնելու հերոս քաղաքին:



Անհրաժեշտ էր իմանալ հակառակորդի կրակակետերը: Ամենահամարձակ ու քաջ հետախույզներից առանձնացվեց 12 հոգուց բաղկացած մի խումբ: Նրանց մեջ էր նաև Սվետլանան: Մութ գիշերով հետախույզներն անցան առաջին գիծը, անաղմուկ հասան թշնամու լարափակոցներին, ապա կտրեցին փշալարերը և խորացան թիկունքը: Ավելի քան մեկուկես ժամ այնտեղ մնալուց և ամեն ինչ իմանալուց հետո, խիզախ հետախույզները սողեսող վերադարձան դեպի մեր դիրքերը: Թշնամին հանկարծ նկատեց նրանց և կրակ բաց արեց: Սվետլանան վիրավորվեց ձեռքից և սրունքներից, բայց շարունակում էր սողալ ցեխի ու ջրի միջով: Շուտով նա ուժեղ ցավեր զգաց, մարմինն սկսեց այրվել և նա կորցրեց գիտակցությունը: Հետախույզներից մեկը օգնության հասավ և մեծ դժվարությամբ նրան հասցրեց մեր դիրքերը: Լուսաբացին պարզվեց, որ կենդանի են վերադարձել Սվետլանան ու նրան օգնության հասած հետախույզը, իսկ մյուսներն ընկել են քաջի մահով: Սվետլանայի կյանքը մեծ վտանգի տակ էր, և բժիշկները պայքարի դուրս եկան մահվան դեմ: Նրանք կտրեցին աղջկա երկու ոտքերը: Նա կամքի մեծ ուժ ուներ և դիմացավ այդ ծանր վիրահատությանը: Իսկ ամիսներ հետո Սվետլանայի համար պատրաստեցին արհեստական ոտքեր: Նա մի քանի տարի անցկացրեց հիվանդանոցներում, մինչև լրիվ առողջացան վերքերը և կարողացավ սովորել քայլել արհեստական ոտքերով: Հիվանդանոցի անկողնում պառկած՝ Սվետլանան չկարողացավ հաշտվել անգործության հետ: Նրա խնդրանքով բժիշկները ձեռք բերեցին 8, 9 և 10-րդ դասարանների դասագրքեր, և նա սկսեց պարապել: Պարապեց, հանձնեց քննությունները և ըստացավ միջնակարգ կրթություն:

Եվ հիմա Կիևի 132-րդ դպրոցի պիոներները հաճախ են տեսնում Սվետլանա Բորիսովնա Տոկարևսկայային: Նա այդ դպրոցի պատվավոր պիոներն է և հաճախ է մասնակցում պիոներական միջոցառումներին: 1959 թվականի մարտ ամսին դրուժինայի հավաքույթին Սվետլանա Բորիսովնայից բացի, մասնակցում էր նաև Սովետական Միության մարշալ Ժուկովը: Սովետական կառավարության անունից մարշալը շքանշան և մեդալ

հանձնեց իր բանակի նախկին մարտիկին, հետախույզ Սվետլանային: Երբ նա տեղից վեր բարձրացավ ու քայլեց դեպի մարշալը, քայլում էր այնպես թեթև ու հաստ, որ ոչ ոք չէր ասի, թե նրա ոտքերն արհեստական են:

## ԽԻԶԱԽ ՈՒՂԵԿԻՑԸ

Այս դեպքը տեղի է ունեցել 1942 թվականի ձմռանը, Սմոլենսկում: Երկու օր տևող ծանր մարտերից հետո սովետական մի խումբ մարտիկներ իրենց հրամանատարների հետ միասին կտրվել էին զորամասից և մնացել թշնամու թիկունքում: Պետք էր ինչ գնով էլ լինի ճեղքել ճակատային գիծը և միանալ յուրայիններին: Բայց ինչպե՞ս անել. տեղանքը անծանոթ էր, զնդակներն ու նռնակները վերջանալու վրա էին, իսկ շուրջը վխտում էին մինչև ատամները զինված գերմանական ֆաշիստները: Եվ ահա նրանց օգնության հասավ 14-ամյա Կոլյան՝ «Մահ ֆաշիստներին» պարտիզանական ջոկատի ամենափոքրիկ անդամը: 64 հոգու գլուխ անցած՝ նա մութ գիշերով ճամփա ընկավ: Մի քիչ գնալուց հետո, Կոլյան նրանց պատվիրում էր տեղից չշարժվել, իսկ ինքը մենակ գնում էր ստուգելու, թե շրջապատում գերմանացիներ չկա՞ն արդյոք: Երկրորդ օրը նրանք քիչ մնաց ընկնեին հակառակորդի ձեռքը:

— Նախորդ օրն այստեղ ոչ ոք չկար. — կարծես արդարանալու համար ասաց Կոլյան. — բայց ոչինչ, մենք ուրիշ ճանապարհով կգնանք:

Եվ Կոլյան նրանց տարավ ավելի ապահով, բայց շատ դժվար ճանապարհով: Ավելի քան 12 կիլոմետր նրանք պետք է գնային դեպի աջ, որպեսզի դուրս գային խճուղի: Հետո նրանք նույնքան էլ պետք է քայլեին ճահիճների միջով և հասնեին Տարասովո գյուղը, որտեղ սովետական զորամասեր պետք է որ լինեին: Կեսգիշերին նրանք հասան խճուղի: Սակայն այստեղ էլ թշնամու տանկային զորամասն էր տիրություն անում: Կոլյան կարգադրեց, որ բոլորը ետ վերադառնան անտառը և սպասեն իրեն, իսկ ինքը գնաց հետախուզության: Բայց, երբ ամեն ինչ ուսումնասիրված էր արդեն և նրանք պետք է անցնեին խճուղին, հանկարծ ոլորանից դուրս թռավ մի մարդատար ավտոմեքենա: Մեքենայի լույսի տակ ֆաշիստները նկատեցին սողացող մարտիկներին: Բոլորն էլ անմիջապես վեր թռան տեղներից և արագ վազքով իրենց գցեցին ծորակը: Ավտոմեքենան կտրուկ [illegible]ակեց իր ընթացքը և կանգ առավ: Ֆաշիստները կրակ բաց արին փախչողների վրա: Աղմուկի վրա հավաքվեցին թշնամական զինվորներով



լի բազմաթիվ ավտոմեքենաներ։ Սկսեցին երկու կողմից կրակել։ Ճիշտ է, մեր զինվորներից մի քանիսը վիրավորվեցին, բայց Կոլյան կարողացավ նրանց շուտ դուրս բերել վտանգավոր վայրից։ Սակայն ճահիճներին դեռ չհասած՝ վիրավորվեց նաև Կոլյան։ Նույնիսկ վիրավոր վիճակում փոքրիկ ուղեկիցը չկորցրեց կողմնորոշումը և 7 ժամ շարունակ ճահիճների միջով տանելուց հետո նրանց հասցրեց սովետական զորամասին։ Տեղ հասնելուն պես Կոլյան այլևս չկարողացավ դիմանալ և կորցրեց գիտակցությունը։ Անմիջապես նրան ուղարկեցին հիվանդանոց։

— Եթե Կոլյան չլիներ, մենք դժվար թե կարողանայինք անցնել ճակատային գիծը, — ասում էին բոլորը։

Առողջանալուց հետո Կոլյան մեկնեց ռազմաճակատ և զենքը ձեռքին կռվեց Սովետական բանակի շարքերում։

## ՄԵԾԵՐԻ ՀԵՏ ՀԱՎԱՍԱՐ

Արյունահեղ մարտից հետո 1941 թվականի ամռանը մայոր Անդրեևի ղեկավարած հրաձգային երկրորդ գումարտակին միացան սովետական մի խումբ քաղաքացիներ։ Նրանց մեջ էր 13-ամյա պիոներ Վասյա Կուրկան։ Նա երազում էր հրաձիգ դառնալ և վրեժ լուծել ֆաշիստներից։ Ռազմաճակատի առաջին գծում, հիտլերականների քթի տակ Վասյան մի խրտվիլակ սարքեց, հրամանատարից հրացան ստացավ և սկսեց պարապել։ Կարճ ժամանակից հետո Վասյան գումարտակի ամենադիպուկ կրակողներից մեկն էր։ Հենց առաջին մարտում նա դիպուկ կրակով շարքից հանեց քսան հիտլերականի։ Իսկ մի քանի օր հետո անվախ պիոները սողալով անցավ ճակատային գիծը և ոչնչացրեց թշնամու այն կրակակետերը, որոնք խանգարում էին իրենց գումարտակի առաջխաղացմանը։



Այդ հերոսական սխրագործության համար Վասյան պարգևատրվեց Կարմիր աստղի շքանշանով։ Դրանից շատ չանցած՝ Վասյա Կուրկան նույնպիսի հերոսության համար արժանացավ երկրորդ պարգևի՝ Կարմիր դրոշի շքանշանի։

Վասյայենց գումարտակը մարտնչեց նաև Լեհաստանի և Չեխոսլովակիայի հողերում։ Ամենուրեք Վասյան մեծ վտանգ էր ներկայացնում հատկապես ֆաշիստական սպաների համար։ Նա նշան էր բռնում նրանց գլխարկների հովարին ու աչքերին պահած հեռադիտակներին և մեկ-մեկ շարքից հանում սպաներին։ Իսկ գիշերները Վասյան նշան էր բռնում նրանց ծխախոտի հազիվ նշմարվող կրակներին։ Նրա ուղարկած ոչ մի գնդակ չէր վրիպում։ 1944 թվականի աշնանը Վասյան ընդունվեց կոմերիտմիության շարքերը։ Դիմումի մեջ նա գրել էր. «Բարձր պատիվ է լինել Լենինյան կոմերիտմիության անդամ։ Քանի դեռ ձեռքերս կարող են հրացան բռնել, ես պիտի ոչնչացնեմ ֆաշիստներին մինչև վերջին շունչս»։

Վասյա Կուրկան հավատարիմ մնաց իր երդմանը։ Միայն 1945 թվականի գարնանը, ոչ լրիվ տվյալներով, նա ոչնչացրեց ֆաշիստական մի քանի հարյուր զինվոր, որոնցից 80-ը սպաներ էին։ Սակայն հաղթանակից մի քանի օր առաջ մարտական առաջադրանք կատարելիս հերոսի մահով ընկավ Վասյա Կուրկան։ Կյանքի գնով նա իմացավ հակառակորդի ականանետային զորամասի տեղը և իր արյունով սպիտակ թղթի վրա գրեց կոորդինատները։

Վասյայի շնորհիվ գումարտակը ոչնչացրեց թշնամու կրակակետերը և շարունակեց առաջ գնալ։

## ՎԱՍԻԼՅՈԿ

Ահա մեկ ուրիշ խիզախ պիոներ, որի անունը նույնպես Վասյա էր։ Բայց նա ավելի շուտ հայտնի է Վասիլյոկ անունով։ Վասիլյոկն, իհարկե, Վասյա Կուրկայից շատ բանով է տարբերվում. նա ոչ մի գերմանացի չի սպանել, ոչ էլ հետախուզության է գնացել կամ օգնել պարտիզաններին։ Բայց Վասիլյոկը այն հերոս պիոներներից է, որոնք իրենց կյանքը զոհեցին հայրենիքի համար։ Նա ապրեց ընդամենը 12 տարի և նրան երկար չվիճակվեց կրել պիոներական կարմիր վզկապը, որն այնքան սիրում էր նա և որի համար էլ զոհվեց քաջաբար։ Վասիլյոկը իսկական հայրենասեր էր, իսկական պիոներ։

Նա նոր էր փոխադրվել երկրորդ դասարանը, երբ պայթեց պատերազմը։ Մի քանի ամիս հետո, նոյեմբերի 7-ին Վասիլյոկն իր ընկերների հետ պետք է ընդունվեր պիոներական կազմակերպության մեջ և կարմիր վզկապ կապեր, երբ գյուղով մեկ որոտացին գնդացիրները. թշնամին սպանում էր կոմունիստներին։ Դա ավելի մեծացրեց Վասիլյոկի ատելությունը դեպի գերմանական զավթիչները։

Մի անգամ պիոներները որոշեցին հավաքույթն անցկացնել Վիսլայի ափին։ Ջոկատավարն այս անգամ նրանց հետ չէր։ Մի քանի օր առաջ նրանք ամբողջ ջոկատով ֆենյային ճանապարհ էին դրել հարևան գյուղը, մասնակցելու նորաստեղծ կոմերիտական կազմակերպության անդրանիկ ժողովին։ Բաժանվելիս նա պիոներներին ասել էր, որ եթե որևէ հանձնարարություն ստանալու պատճառով չվերադառնա ժամանակին, հավաքույթն անցկացնեն առանց իրեն։

Վիսլայի ափին պիոներները խարույկ վառեցին, փոքրիկ կաթսայով կարտոֆիլ խաշեցին և կրակի շուրջը նստած՝ բարձրաձայն կարդում էին «Ինչպես էր կոփվում պողպատը» գիրքը։ Երբ բավականին կարդացել էին, շտաբի պետ Վասիլյոկն ասաց.

— Իսկ հիմա՝ դեպի անտառ, ծաղիկներ քաղելու։

Երեխաները ցրվեցին ծառերի մեջ՝ վերջին հովտաշուշանները գտնելու։ Հանկարծ տղաներից մեկը վախեցած գոռաց.

— Շո՜ւտ, այստե՛ղ եկեք։

Թփերի մեջ ընկած էր իրենց ջոկատավարի անշունչ դիակը, վզկապը պատառոտված էր։ Պարզ էր, որ նրան սպանել էին թշնամիները։ Բայց ինչո՞ւ էին պատառոտել վզկապը, պարզ չէր։

Այդ դեպքից մի քանի օր հետո Վասիլյոկը գընում էր տատիկենց տուն, երբ նրա ճանապարհը կտրեցին երկու հոգի։ Վասիլյոկը անմիջապես ճանաչեց նրանցից մեկին։ Դա նախկինում ցարական ոստիկան էր եղել, իսկ այժմ դավաճանել էր հայրենիքին և աշխատում էր գերմանացիների մոտ։

— Է՜յ, լակոտ, հանի՛ր այդ ջնջոցը, — գոռաց դավաճանը և բռնեց նրա վզկապից։ — Բոլորիդ կսպանենք, եթե այդ ջնջոցը նորից տեսնենք քո և ընկերներիդ կրծքին։

Թշնամին արյունակալ աչքերով նայում էր փոքրիկ տղային, իսկ սա արդեն գիտեր, թե ովքեր են սպանել իրենց ջոկատավարին։ Հետևյալ օրը Վասիլյոկը կրծքի վրա դարձյալ հպարտ կրում էր կարմիր վզկապը։

Անցան օրեր։ Երբ ցրտերն ընկան, տղաները վերջին կացինները և գնացին անտառ փայտ կտրելու։ Հանկարծ նրանց դեմ դուրս եկան նույն բանդիտները։

— Է՜յ, տղաներ, — գոռացին նրանք հեռվից, — ծեր մե՞ջ է Շիշկովսկու տղան, նա, որ էլի վզկապ է կապում և ժողովում էլ ճառեր է ասում։

Տղաները հասկացան, որ թշնամիները փնտրում են Վասիլյոկին։

— Ոչ, նա գյուղում է, — ստեցին տղաները։

Պետյան իր մարմնով ծածկեց Վասիլյոկին, և նա չէր երևում։ Բանդիտները նորից խորացան դեպի անտառը։ Երեխաների տրամադրությունն ընկավ։ «Գուցե հանեմ վզկապը և այլևս չկապեմ», — անցավ Վասիլյոկի մտքով։ «Ո՛չ, ոչ մի դեպքում», — ներքին մի ուրիշ ձայն պատասխանեց տղային։

Մյուս օրվանից Վասիլյոկը շարունակում էր էլի ման գալ գյուղում կարմիր վզկապով։

Բայց դեկտեմբերյան մի ցուրտ գիշեր թշնամիները հարձակվեցին Վասիլյոկենց տան վրա և հրդեհեցին տունը։

Վառվող տան մոտ գյուղացիները գտան սպանված Վասիլյոկին։

Վասիլյոկը իսկական պիոներ էր։ Նա բարձր էր գնահատում պիոներական վզկապը, իր պիոներական պատիվը։ Նա զոհվեց, բայց անձնատուր չեղավ թշնամուն։

Փ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ



# ՏՂԱՍ

Ն. ԽՈՋԱ

Թրգմ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

... Երբ պատերազմն սկսվեց, ես առաջին կարգի ավագ էի նավաստորմում: Բայց շատ շուտով, եթե չեմ սխալվում՝ օգոստոսի վերջերին, ինձ նշանակեցին ծովային հետևակի գնդի հետախուզության հրամանատար: Ծանր օրեր էին: Մենք նահանջում էինք: Եվ մեր գունդը Պակովից նահանջելով՝ սեպտեմբերին հասավ մինչև Պետերգոֆ: Ահա հենց այդ ժամանակ էր, որ մեր շտաբում ես առաջին անգամ տեսա Ժորային՝ Գեորգի Անտոնենկոյին: Իմ հետախուզախմբում հինգ եղբայր-տղերք կային, և մենք բոլորս նրան անվանում էինք «տղա՜ս»: Թե հետախուզախմբի տղաները և թե ես ծանոթ չէինք այդ վայրին: Մեզ նեղ տեղից հանում էր Անտոնենկոն: Զարմանքի կարողությամբ աչքերով, ճարպիկ ու ժիր այդ փոքրիկ տղան իր հարազատ շրջակայքն ավելի լավ գիտեր, քան նավաստին՝ նավը: Շատ ու շատ անգամ նա շրջել էր այդտեղի անտառային բոլոր արահետները, ձորակները, ճահիճները, սորապատյա ճանապարհները, թփուտներով ծածկված կածանները:

Ազատ րոպեներին ես Ժորային սովորեցրի նռնակ նետել և մի քանի այլ հնարամտություններ: Մեզանից ոչ որ չէր կարող նրա նման կրակել:

Շուտով ես նրան հետս տարա մի փոքրիկ բարձունք: Հարմար տեղ ընտրեցինք և հեռադիտակներով սկսեցինք հետևել գերմանացիների առաջավոր գծին: Ամբողջ ծովածոցը շատ պարզ երևում էր: Ահա մի փոքրիկ բուքսիր երևաց ծովածոցում: Հևում է, խեղճը և հետևից քարշ տալիս երեք խոշոր բեռնանավ՝ Պիտերից ռազմամթերք է բերում Օրանիենբաում: Իսկ ծովածոցը հայելու պես անդորր էր ու վճիտ: Թվում էր, թե նույնը՝ պատկերը կտևանա: Հանկարծ ինչ-որ տեղից գրգռաց հրանոթը և մրրկայուներ բարձրացան բեռնանավերի շուրջը: Արկեր պայթեցին: Իսկ երբ քամուց ցրվեցին ծխի վերջին ծվենները, ոչ բուքսիր կար, ոչ բեռնանավ:

Եվ նորից մաքուր ու հայելու պես հարթ էր ծովածոցը:

Ես նայեցի Ժորային: Մեռելի պես գունատ էր տղայի դեմքը:

— Որտեղի՞ց են նրանք կրակում, որտեղի՞ց են կրակում,— խելագարի նման հարց էր տալիս նա,— ասա, որտեղի՞ց են կրակում:

Ես լուռ էի: Ոչինչ չէի կարող պատասխանել: Ինքս էլ չգիտեի, թե որտեղից էին կրակում գերմանացիները հիմա, որտե՞ղ է գտնվում նրանց մարտկոցը: Իսկ նա առանց տեղից վեր կենալու, հեռադիտակով մարտկոցն էր փնտրում և անդադար կրկնում.

— Որտեղի՞ց են կրակում, որտեղի՞ց են կրակում:

Եվ կարծես մեզ ծաղրելու համար հենց գլխներիս վերևից սուլոցով անցավ մի արկ, ապա՝ երկրորդը, երրորդը, չորրորդը: Պայթյուն չլսեցինք: Մեր ականջը ծակեց չարագուշակ մի շառաչ միայն:

— Հարկավոր է գտնել ու ոչնչացնել այդ անիծված մարտկոցը:— Ժորան արագ ոտքի ելավ և շտապեցրեց ինձ. Գնանք հրամանատարի մոտ: Հարկավոր է նրան ասել: Հարկավոր է ոչնչացնել մարտկոցը:

Նա դեռ փոքր էր և անհամբեր: Նրան ամեն ինչ շատ հեշտ էր թվում. կգնանք գնդի հրամանատարին, իսկ նա կհրամայի ոչնչացնել ֆաշիստական մարտկոցը, և ամեն ինչ կվերջանա: Բայց ես գիտեի, որ տանջալից աշխատանք կպահանջվի այդպիսի մարտկոցը ջախջախելու համար:

Փորձեցի բացատրել Ժորային, բայց նա խելագարի նման անընդհատ կրկնում էր. «Հարկավոր է մարտկոցը ոչնչացնել, հարկավոր է ոչնչացնե՜լ»:

Նոր էինք վերադարձել, երբ ինձ իր մոտ կանչեց գնդի հրամանատարը: Ա՜յ քեզ զուգադիպու-

թյուն։ Հենց իմ հետախուզախմբին էր հրամայվում պայթեցնել ֆաշիստական մարտկոցը։ Շտաբին հայտնի էր, որ մարտկոցը գտնվում էր Տրոիցկայա գյուղի շրջակայքում։

Ես հրամանը հայտնեցի իմ հետախույզներին։ Նրանք ուղղակի ջոկովի էին՝ բոլորը կատաղի ու անվախ նավաստիներ։ Ֆրիցները այդպիսիներին «սև մահ» էին անվանում։ Այդ տղաներին ոչինչ չէր կարելի վախեցնել։ Եվ այժմ էլ նրանք ինձ միայն մի հարց տվեցին.

— Ե՞րբ ենք գնում։

Ես չէի շտապում պատասխանել։ Առայժմ շատ բան ինձ համար էլ պարզ չէր։ Այդպիսի գործողության գնալ, առանց հաստատ գիտենալու, թե որտեղ է գտնվում մարտկոցը, ինչպես են պաշտպանվում նրա մատույցները, կնշանակեր ուղղակի սպանվել, իսկ առանց մարտական առաջադրանքը կատարելու՝ անիմաստ սպանվելը հիմարություն է։

— Ես գիտեմ Տրոիցկայա տանող բոլոր ճանապարհները։ Գիշերային հետախուզության կգնամ ու կգտնեմ այդ մարտկոցը։

Փորձեցի այդ մտադրությունից ետ կանգնեցնել նրան.

— Դա շատ վտանգավոր է։ Իսկ եթե բռնեն...

— Չեն բռնի,—համոզված ասաց նա։— Տրոիցկայայում ծանոթներ ունեմ... Անտառով կգնամ, ճանապարհը կշրջանցեմ... ճահիճներով...

Նույն գիշերը ես Ժորային ճանապարհ դրի մինչև մեր խրամատների առաջավոր գիծը, գրկեցի նրան, և նա անհայտացավ հոկտեմբերյան ցուրտ ու խոնավ գիշերվա խավարում։

Մինչև Տրոիցկայա գյուղը կլիներ մի վեց կիլոմետր, սովորական ճանապարհով գնալու դեպքում։ Բայց ո՞ր հետախույզը կգնա խճուղով։ Ժորան գնացել էր անտառով, գերմանացիներին անհայտ ճահճային կածանով։ Մեծ հմտություն է պետք հոկտեմբերյան անձրևոտ գիշերով գտնել ճահճի միջից անցնող միակ նեղլիկ կածանը։ Նա ուղղակի բնածին հետախույզ էր...

Վեց կիլոմետրի փոխարեն Ժորան անցել էր առնվազն տասներկու կիլոմետր։ Եվ գրեթե ամբողջ այդ տարածությունը՝ թշնամու թիկունքում։ Միայն հետախույզը գիտե, թե ինչ է նշանակում մարտական գործողությունների վայրերում գիշերով տասներկու կիլոմետր հաղթահարելը։ Լուսաբացին Ժորան հասել էր գյուղի ծայրը։

Երբ ամպերի արանքից հազիվ թափանցեցին լուսնի դժգույն շողերը, Ժորան մոտերքում մի մարագ նկատեց։ Հենց այստեղ էլ նա պատսպարվեց։ Տղան հանեց թաց հագուստը և մտավ խոտի մեջ։ Նա դողացնում էր և երկար ժամանակ ցրտից չէր կարողանում քնել։ Բայց անձրևի տաղտկալի կաթկթոցն ու ծառերի միապաղաղ աղմուկը քնեցրին նրան։



Ժորան զարթնեց հրանոթի կրակոցից։ Նա մոտեցավ դռան ճեղքին, դուրս նայեց, բայց ոչինչ չտեսավ. լույսը դեռ նոր էր բացվում։

Ժորայի զննումն ընդհատվեց խլացուցիչ մի նոր համազարկով։ Այս անգամ նա պարզ տեսավ հրանոթի կրակոցից առաջացած լույսերը։ Եվ այդ ժամանակ միայն տղան հասկացավ, որ ինքը գտել է այդ անիծված մարտկոցի թաքստոցը։ Նա գրեթե մի ժամ սպասեց մինչև մարտկոցի նոր համազարկը։ Եվ Ժորան նորից տեսավ կրակոցից առաջացած լույսերը... Այժմ նրա համար գրեթե պարզ էր, որ ֆրիցները իրենց հրանոթները տեղավորել են ձորակում։

Բայց հետախույզի համար գոյություն չունի «գրեթե պարզ է» հասկացողությունը։ Նրա համար ամեն ինչ պետք է պարզ լինի։

Ամբողջ օրը Ժորան անցկացրեց մարագում, իսկ երբ երեկոն վրա հասավ, թողեց իր դիտակետը և գնաց դեպի ձորակը։

Եվ նա գտավ այդ մարտկոցը։ Կարելի է ասել՝ մարտկոցը ինքն իրեն հայտնաբերեց. ֆրիցները ամբողջ երեկո գնդակոծում էին Լենինգրադը։ Հետախույզը գնում էր հրանոթների համազարկերի ուղղությամբ։ Եվ վերջապես հայտնվեց մարտկոցի գրեթե կողքին...

Առավոտ վաղ Ժորան զորամաս վերադարձավ։ Նա նստած էր ինձ մոտ՝ թրջված, սոված, ցեխոտ-



ված, բայց ես նրան երբեք այդքան ուրախ չէի տեսել:

Դեռ շորերը չփոխած, նա իսկույն սկսեց զեկուցել հետախուզության արդյունքները: Եվ ես ապշել էի նրա հիշողության, նրա դիտողականության: Նա մտապահել էր, թե քանի անգամ էր կրակել մարտկոցը, քանի հոգուց էր սպասարկվում այն, պահակապետը որ կողմից էր բերում ժամապահների հերթափոխներին, որտեղ էր գտնվում պահակատունը, որ կողմում էին գտնվում բլինդաժները...

Երեկոյան մեր հետախուզախումբը ճանապարհ ընկավ դեպի Տրոիցկայա: Սակրավորները ականազերծեցին մի նեղ շերտ, և մենք անցանք ռազմաճակատի գիծը: Առջևից սողում էր Ժորան, նրա հետևից՝ ես, իսկ իմ հետևից հինգ եղբայր-ավագները՝ կապույտ և անվեհեր նավաստիներ: Խումբը եզրափակում էր գնդի հրամանատարի տեղակալը քաղաքական մասի գծով: Բոլորս զինված էինք նռնակներով ու դանակներով՝ հետախույզի այդ հավատարիմ ուղեկիցներով:

Հոկտեմբերի չորսի լույս հինգի գիշերը անձրևոտ էր ու մութ: Ես վախենում էի, թե մեր փոքրիկ ուղեցույցը կշեղվի կածանից կամ ուղղությունը կկորցնի: Այնքան մութ էր, որ մենք մի քայլի վրա միմյանց չէինք տեսնում: Բայց Ժորան վստահ առաջնորդում էր մեզ:

Հանկարծ երկնքում գողի պես զգույշ դեսուդեն վազեց լուսարձակի ճառագայթը: Մենք իսկույն գետին փռվեցինք: Շոշափելով ամպերի բույլերը, ճառագայթը կանգ առավ ծովածոցում, ապա սահեց անտառի սաղարթներով ու հանգավ:

Բայց ահա մոտենում էինք մեր նպատակին: Տաղտկալի անձրևն անընդհատ ծեծում էր մեր քողարկման խալաթների կնգուղները: Ժորան առանց քողարկման խալաթի էր: Նրա վրայով ոչ մի խալաթ չհարմարեց: Ինչպես միշտ, նրա հագին իր գորշագույն վերարկուն էր, վրայից կապված էր զինվորական գոտի, որից կախված էին նռնակներ ու դանակ:

Մենք շատ ավելի դանդաղ էինք շարժվում դեպի մարտկոցը, քան ես կարծում էի: Շատ ավելի հաճախ էինք ստիպված լինում ընկնել թոշնած ու թաց կանաչի վրա և պառկած սպասել մինչև վտանգն անցնի՝ հանգչի լուսավորող հրթիռը, մինչև ճանապարհի վրա անցնելուց դադարեն մոտոցիկլետները, մարի լուսարձակի շողքը, լռի ֆաշիստական պահակախմբի խոսակցությունը: Սպասել առվի մեջ պառկած, սպասել ծառի հաստ բնի հետև թաքնված, սպասել ձորում նստած... Սպասե՛լ... Սպասե՛լ...

Եվ մենք սպասում էինք: Մեզնից ամենահամբերը Ժորան էր: Այնքան ուժեղ էր նրա ատելությունը դեպի այդ մարտկոցը, որ նա պատրաստ էր արհամարհել ամեն մի վտանգ, միայն

թե, որքան կարելի է, շուտ ոչնչացնեի այն: Ես սովորված էի շուտ-շուտ զգալ տղային: Բայց դա այնքան էլ հեշտ չէր: Թշնամու տերիտորիայում, այդպիսի հանգամանքներում խոսակցությունը քայլ էր խոսելը: Իսկ ձեռքի շարժումները չէին երևա մթության մեջ: Վառոդի բռնկումներին ես տղային գետնին էի սեղմում և, պառկած, ձեռքս չէի վերցրնում նրա ուսից, որպեսզի նա վեր չկենա ժամանակից շուտ:

Կեսգիշերը վաղուց անց էր, երբ մենք հասանք մեր նպատակակետին: Մինչև մարտկոցները, Ժորայի ասելով, մնում էր ամենաշատը հարյուր մետր: Ես հրամայեցի նրան սողալով իջնել ձորը և այնտեղ մեզ սպասել: Բայց այդ էլ ինձ հեշտ չեղավ անել: Տղան հրաժարվում էր հրամանս կատարելուց: Ուզում էր իր ձեռքով դնել պայթուցիկ նյութը: Ես կատաղած շշնջացի.

— Պիոնե՛ր Անտոնենկո, քեզ կոմանդիրն է հրամայում: Մնա՛ այստեղ, սպասի՛ր մեզ:

Ժորան ենթարկվեց:

Այժմ մենք պետք է ընդհուպ մոտենայինք մարտկոցին: Մթության մեջ, երբ մարդ չի տեսնում իր իսկ ձեռքը, այնքան էլ հեշտ բան չէ հայտնաբերել և անաղմուկ ոչնչացնել ժամապահին: Իսկ առանց դրան խոսք անգամ չէր կարող լինել մեր այդ գործողության հաջող վախճանի մասին:

Մեզ օգնության հասան իրենք՝ ֆաշիստները: Այն օրերին նրանք դեռ հանդուգն էին, ինքնավստահ, իրենց լիակատար անվտանգ էին զգում: Ժամապահները ձանձրացել էին մարտկոցի տարբեր ծայրերում լուռումունջ կանգնելուց: Սկըզբում քամու հետ մենք լսեցինք հատ ու կենտ գերմաներեն բառեր: Այնուհետև լսեցինք, թե ինչպես նրանցից մեկն սկսեց մի երգ: Եվ, վերջապես, տեսանք փոքրիկ բաց դեղնագույն լեզվակներ: Ժամապահները հավաքվել էին մի-մի սիգարետ ծխելու: Եվ մենք սողացինք նրանց սիգարետների կրակների ուղղությամբ: Ի՞նչ անել: Դա վերջին սիգարետը եղավ նրանց կյանքում:

Շատ ժամանակ չպահանջվեց, որպեսզի հրանոթների փողերը պայթուցիկ նյութ լցնենք: Երբ բռնկվեց բիկֆորդյան լարը, մենք բոլորս ձորը նետվեցինք, որտեղ թողել էինք Ժորային: Մենք վազում էինք անտառով: Չգիտեմ ինչքան ժամանակ անցավ, երբ մեկը մյուսի հետևից դղրդացին երեք պայթյուն: Անիծյալ մարտկոցը լռեց հավիտյան:

Բայց հազիվ լռեց պայթյունների աղմուկը, երբ կրակոցներ, գոռում-գոչյուն, ոռոցներ լսվեցին: Սկսեցին մեզ հետապնդել: Երկնքից կախվեց լուսավորող հրթիռ, որի չարագուշակ լույսը խավարից հանեց անտառի մի մասը, բացատը, ինչ-որ առու: Մենք առուն նետվեցինք և սպասեցինք մինչև հանգչի այդ նզովյալ լապտերը:

Ինչ-որ շատ մոտիկ գոռգոռացրին ֆրիցները, որոնք մթության մեջ սկսեցին կրակել լուսավոր հետք թողնող գնդակներով: Աղմուկով լցվեց մինչ այդ մեռյալ անտառը: Կրակում էին ամեն կողմից: Թվում էր, թե ամեն մի ծառի հետևից գերմանացի ավտոմատավոր է կրակում: Անընդհատ երկինք էին բարձրանում գունագույն հրթիռներ:

Ինչ գնով ուզում է լինի, հարկավոր էր խուսափել հետապնդումից:

Մենք շրջաններ էինք գործում անտառում, որպեսզի թշնամին մեր հետքը կորցնի: Մեզ փրկում էր գիշերը: Գերմանացիք վախենում էին, թե մթության մեջ կրակելով՝ հանկարծ յուրայիններին վնաս կպատճառեն: Եվ երբ արևը հազիվ սկսեց ծագել, ֆրիցների կրակոցներն ու խոսակցությունը արդեն հեռվից էին լսվում: Բայց ինձ համար պարզ էր, որ գլխավոր վտանգը դեռ հետո է սկսվելու:

Ռազմաճակատի գիծը պետք է անցնեինք մեզ անծանոթ վայրից: Միայն գիտեի, թե ինչ նշանակի հակառակորդի առաջավոր գիծն անցնել առանց նախնական հետախուզության: Մանավանդ որ գիշերային հետապնդումը, կրակոցները, հրթիռները, ավտոմատների փամփուշտաշարերը՝ այդ ամենը խռովել էր հակառակորդի հանգիստը, սրել նրա ուշադրությունը: Գերմանացիք



այժմ զգաստ էին ռազմաճակատի ամբողջ հատվածում:

Թեև լուսացել էր լուսածերպին արևելքում, մեզ դեռ նպաստում էր գիշերը: Մենք շունչներս պահած սպասում էինք: Բայց հանկարծ նախաստեղնե-րից մեկի տակ ճարճատեց մի չոր ճյուղ: Գիշերային խավար լռության մեջ պայթյունից ավելի խլացուցիչ թվաց այդ ճարճատյունը: Նույն վայրկյանին գերմանացի ժամապահը ձայն տվեց.

— Ալե՞րտ...

Մենք լուռ էինք:

— Ալերտ, այդ դո՞ւ ես,— վախեցած կրկնեց ժամապահը:

Մենք շարունակում էինք լռել:

Տեսնելով, որ պատասխան չկա, գերմանացին կրակեց: Մենք հայտնաբերված էինք:

— Կրա՛կ,— ոտքի կանգնելով, գոռացի ես:

Կրակոցներով պաշտպանվելով, մենք նահանջում էինք, վստահ լինելով, որ կկարողանանք վերադառնալ մերոնց մոտ:

Բայց պատահեց վատթարագույնը: Գերմանացիները գամփռներ բաց թողեցին մեր հետքերով: Սկզբում նրանց հաչոցը հազիվ էր լսվում, այնուհետև աղմուկն սկսեց մոտենալ: Այդ ժամանակ քամին ցրել էր ամպերը և լուսաբացի լուսնի գունատ լույսի տակ մենք արդեն պարզ տեսնում էինք միմյանց:

Բլրակի հետևից դուրս պրծավ մի դասակ գերմանացի ավտոմատավորներ: Նրանք վզափոկերից արձակեցին երկու գամփռների, իսկ իրենք փորձեցին շրջանցել մեր թիկունքը և կտրել մեր նահանջի ճանապարհը:

Գործի դրինք նռնակները: Առաջինը Ժորան նետեց: Առջևից վազող գերմանացին ջղաձգվեց, փորը բռնեց ու գետին տապալվեց:

— Կեցցե՛ս, տղա,— գոչեց գնդի հրամանատարի քաղաքական գծով տեղակալն ու ավտոմատով կրակ բաց արեց:

Գամփռները՝ այդ կատաղի գազանները, անխոցելի էին թվում: Լուսնի խաբուսիկ լույսի տակ անսովորեն խոշոր էին թվում նրանք: Կոճղի հետևում պառկած, ես պաշտպանվում էի ատրճանակի կրակոցներով: Եվ հանկարծ մեջքիս թռավ գամփռներից մեկը: Նա ժանիքները մխրճեց աջ ձեռքիս մեջ և ինձ հպեց գետնին: Հասկացա, որ մի քանի վայրկյանից արդեն կենդանի չեմ լինի: Եվ հանկարծ հրաշք կատարվեց. գամփռի ծնոտները թուլացան և նա վրայիցս մի կողմ ընկավ: Կարծես մշուշում ես տեսա Ժորային: Նրա դանակից արյուն էր կաթում: Կողքիս ընկած էր արդեն սատկած գամփռը: Երկրորդ գամփռին կրակոցով սպանեց գնդի հրամանատարի տեղակալը:

Անհավատալի էր թվում, որ մենք բոլորս դեռ կենդանի էինք և նույնիսկ վիրավորված էլ չէինք:



## ԱՂԲՅՈՒՐ— ՀՈՒՇԱՐՁԱՆ

Ձորամիջի ճամփի տակ
Մի աղբյուր է կարկաչում,
Գիշեր-ցերեկ շարունակ
Ծարավներին է կանչում:

Աղբյուրի մոտ կարկաչուն,
Հոտն է փռվել գառների,
Հովվի սրինգն է հնչում
Ինչպես զեփյուռ՝ սարերի:

Աղբյուրի թեք կամարին
Մի քանի բառ է գրված.
«Նվիրում եմ հերոսին,
Որ մեծ կռվում է զոհված»:

ԳՅՈՒԼՆԱՐԱ ԽՈՅԵՑՅԱՆ

(Սպիտակի միջն. դպրոցի 11-րդ դասարանի աշակերտուհի)



Առաջվա պես նռնակներով պաշտպանվելով, գնում էինք դեպի մեր դիրքերը: Այնուամենայնիվ հասանք չեզոք գոտին: Ամենադժվարն արդեն անցել էր: Բայց մի՞թե կարող ես ասել, թե պատերազմում որտեղ և ե՞րբ է փորձանք գալու գլխիդ: Ֆրիցների նետած վերջին նռնակի բեկորով մահացու վիրավորվեց 98-րդ հրաձգային գնդի հետախույզ Գեորգի Անտոնենկոն:

Եղբայր-տղերքից երկուսը բարձրացրին մեր տղային, իսկ մենք կրակով պաշտպանում էինք նրանց նահանջը:

Մարտի թեժ պահին մենք չնկատեցինք, թե ինչպես հայտնվեց մեր ծովային հետևակի ջոկատը: Եվ մի քանի րոպեում ամեն ինչ վերջացած էր: Հիտլերականները արժանացան իրենց գամփռների բախտին:

Թարգմ. Ա. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ԱՂԱՎՆԱՊԱՀ ՏՂԱՆ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Բալլադ

*Մանուկ հասակում զոհված՝ ռոստովցի աղավնապահ-պիոներ Վիտյա Չերևիչկինի հիշատակին*

Աղավնիներ էր պահում մի տղա.
Այնպես լա՜վ գիտեր հավքերի լեզուն
Ամեն առավոտ կտուրից խաղաղ
Թռցնում էր նրանց երկինքը լազուր
Թռցնում էր նրանց կռվի օրերին.
Երբ սուղ էր այնպես ապրուստը մարդկանց,
Բաժին էր հանում աղավնիներին
Իր կտոր հացից, կտրոնով տրված:
Մի օր թշնամու զորքը ներխուժեց,
Եվ գերության մեջ քաղաքը ընկավ.
Եվ մանուկներին խստիվ արգելվեց,
Որ աղավնիներ չպահեն հանկարծ:
Սակայն այդ տղան մնաց աներեր.
Թախիծով նայեց երկնին կապուտակ.
Տարավ ընդհատակ մթին մի գիշեր
Աղավնիներին իր նամակատար:
Նա երազում էր, ինչ էլ որ լինի,
Մոտիկ զորքերին ուղարկել նամակ:
Եվ ահա ձեռքին մի զույգ աղավնի,
Դեպի փողոց է վազում նա մենակ
Ու բաց է թողնում նա մի աղավնուն,
Նայում է հուսով նրա նախրանքին,
Սակայն թշնամու պարեկն անանուն
Նշան է բռնում նրա թիկունքին
Տղան ընկնում է մայթերի վրա
Մյուս աղավնուն սեղմած իր կրծքին.
Մայթերն է ներկում արյունը նրա
Եվ փետուրները՝ ներման իր հավքի...
Վրա է հասնում զորքը հաղթական
Եվ գերությունից քաղաքն ազատում.
Ու բարձրացնում են այն հերոս մանկան,
Հերոս, որ զոհվեց հայրենի մարտում.
Իրենց ուսերին տանում են անձայն.

Թաղում են նրան մի կանաչ այգում
Եվ կառուցում են շիրիմին արձան,
Եվ աղավնի են ուսին քանդակում:
Քանի տարի է անցել այն օրից,
Խաղաղություն է նա դեռ երազում:
Նա դեռ մանուկ է, իրենց կտուրից
Նայում է կարծես երկնքին լազուր
Նայում է՝ գալիքն իր մանուկ սրտում,
Իսկ գլխի վերև՝ երկինքը անամպ,
Աղավնիներ է բաց թողնում օդում,
Որ նրանք նախրեն միշտ խաղաղությամբ:



## ՄԻ ԴՐՈՇԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

*Այս դեպքը պատահեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին:*

*Մի տան նկուղում, որը եղել էր գերմանական պահեստ, մեր զինվորները գտան մի կարմիր դրոշ: Ֆաշիստներն այն խլել էին Կաստորնոյեի դպրոցականներից, որպեսզի նրանց գիտակցությունից ջնջեն այն ամենը, ինչով ապրում էին պիոներները...*

*Եվ զինվորներն իրենց զոհված ընկերների աճյունի առաջ երդվեցին՝ մինչև հաղթանակը պահել ու պահպանել պիոներական դրոշը. Այնուհետև դրոշն անցավ պատերազմի բոլոր մարտերի բովով, եղավ ռազմական մարտիկների անգերազանց հերոսության վկան:*

*Պատերազմից հետո «Ն» հրետանային գնդի մարտիկները իրենց լավագույն զինվորներին ուղարկեցին Կաստորնոյա.*

*— Պահպանեցե՛ք ինչպես սրբություն, — դրոշը հանձնելով պիոներներին՝ ասացին նրանք: — Վառ պահեք նրանց հիշատակը, ովքեր մարտական գործերով ապացուցեցին իրենց նվիրվածությունը սիրելի հայրենիքին: Եղե՛ք նրանց նման հավատարիմ:*

*Պիոներների շարասյունը պատասխանեց՝ երդվո՛ւմ ենք:*

# ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ՓՈՔՐԻԿ ՄԱՐԿՈՍԸ

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Կեսգիշեր էր արդեն, բայց մենք դեռ նստած էինք հսկայական կաղամախու տակ ու շարունակում էինք մեր զրույցը: Այդպես ենք մենք՝ հին զինվորներս, պատերազմի մասին խոսելուց միշտ խանդավառվում ենք, բայց հենց սկսում ենք հիշել անցած-գնացած դառը օրերը, այլևս չենք կարողանում լռել: Աչքի առաջ են գալիս մեր ռազմաճակատային բոլոր ընկերները և կարծես նրանցից ամեն մեկն ուզում է, որ իրեն էլ հիշենք, ավելի ճիշտ, մենք մեր պարտքն ենք համարում հիշել բոլորին:

Եվ այս կաղամախու տակ հոսում էր դեռ արևամուտից ծայր առած հուշազրույցը: Բոլորս էլ հին զինվորներ էինք: Հովակ ամին ժամանակին անվեհեր ֆիդայի էր եղել, հետո մասնակցել էր նաև Առաջին համաշխարհային պատերազմին: Մնացած չորսս Հայրենական պատերազմի մասնակից էինք, իսկ Մուշեղը նույնիսկ եղել էր ճապոնական կռվում:

Բոլորս էլ անմոռանալի հիշողություններ ունեինք և երբ մեկը մի դեպք էր պատմում, մյուսներն իսկույն հիշում էին նմանօրինակ դեպքեր: Հովակ ամին քիչ էր խոսում. «Իմ ժամանակ կռիվն ի՞նչ էր որ,— ասում էր,— դուք ջահել եք, ինչներդ պատմեք»... և ամեն մեկից հետո հայտնում էր հին զինվորի իր հեղինակավոր կարծիքը:

Բա՜, կռվի մեջ փլավ չեն բաժանում,— իմ պատմությունը լսելուց հետո ասաց նա: Եվ երևի արդեն գնայինք քնելու, եթե Մուշեղը չասեր.

— Ուզո՞ւմ եք պատմեմ կռվում փլավ բաժանող մի տղայի մասին: — Եվ սկսեց առանց համաձայնության սպասելու. — Անունը Մարկոս էր և հազիվ տասնհինգ տարեկան լիներ: Պատահականորեն էր ռազմաճակատ ընկել: Արարատյան դաշտի գյուղերից էր: Ամեն տարի ամառը գնալիս է եղել հորեղբոր մոտ, որն ուկրաինական սահմանի վրա է ծառայելիս եղել: Այդ տարի էլ նոր է եկած եղել, երբ սկսվել է պատերազմը: Հորեղբայրը զոհվել է հենց առաջին մարտերում, հետո նա կորցնում է նաև հորեղբոր ընտանիքը ու որդեգրվում մեր զորամասի կողմից: Դա մի թխլիկ, սիրուն տղա էր, զարմանալի արագաշարժ: Ուներ խորը, բայց միշտ ժպտուն աչքեր: Բոլորը նրան Մարկուս էին ասում, իսկ բաղդեկ Դիմշիկը՝ Մարկ, և միայն հայերն էին նրան Մարկոս ասում: Իսկ հայեր շատ կային մեր զորամասում, թեև զորամասը հայկական չէր:

Հրամանատարը Մարկոսի հորեղբոր ընկերն էր՝ գնդապետ Արամյանը: Նա կարգադրել էր, որ Մարկոսին թույլ չտան կռիվներին մասնակցելու, հրամայել էր, որ մնա զորամասում մինչև շրջապատումից դուրս գալը: Հետո նա մտադիր էր Մարկոսին տուն ուղարկել:

Բայց տասնհինգ տարեկան տղայի համար պատերազմը խաղ ու պար էր: Նա լավ չէր գիտակցում ամբողջ վտանգը և ամենուր քիթը խոթում էր: Ո՞վ գիտե, գուցե նա լավ էլ գիտակցում էր ամեն ինչ, բայց ցույց չէր տալիս: Խոհարար Վասիլը, որին էլ հանձնված էր տղայի խնամքը, միշտ բողոքում էր ինձ. «Զեմլյակիդ խելքի բեր,— ասում էր նա,— գլուխս մի փորձանք կբերի, էլ գնդապետի ձեռքից չեմ պրծնի»: Իսկ ես ի՞նչ կարող էի անել, միշտ առաջին գծում էի լինում և քիչ էի տեսնում Մարկոսին:

* * *

Ամառը վերջանալու վրա էր և գիշերները ցուրտ էր լինում: Խրամատի պատին հենված, ես մտածում էի, որ մեզ մոտ երևի այս ժամին շոգից քնել չեն կարողանում, իսկ ես կարգին մրսում եմ: Ռազմաճակատում լռություն էր տիրում, միայն շատ հեռվից հրանոթային հրաձգության խուլ դղրդյուն էր գալիս: Մեկ-մեկ էլ, իրենց սովորության համաձայն, կրակում էին գերմանացիները: Կրակում հենց այնպես, որպեսզի ցույց տան, թե արթուն են, կան: Ժամապահներից բացի, գիշերվա թեժ մարտից հետո, զինվորի զգաստ քնով քնած էին բոլորը: Միայն ես չէի կարողանում քնել: Մտքով տեղափոխվել էի տուն՝ մերոնց մոտ, անցնում էի մեր լեռնային շավիղներով, հանդիպում հարազատներիս ու ընկերներիս:

Վերջապես քունն հաղթահարեց ինձ ու ես րակրեցի նիրհել, բայց քնի մեջ էլ հարազատ վայրերի պատկերները ինձ հանգիստ չէին տալիս:

Հանկարծ ականջիս հայերեն խոսքեր հասան.

— Մուշեղ հոպա՛ր, Մուշեղ հոպա՛ր...

Սակայն ձայնը ոչ միայն ինձ չարթնացրեց, այլև ավելի հաստատեց հարազատ վայրերում գտնվելու պատրանքը:

Հետո մեկն սկսեց ուսս ցնցել: Անմիջապես վեր թռա և տեսա, որ մեկը նստած է դեմս: Ես անմիջապես ճանաչեցի Մարկոսին: Նա երբեք չէր բաժանվում հորեղբոր գնած մորթե գլխարկից: Ես ճանաչեցի նրան վեր ցցված ականջակալներից:

— Մարկո՞ս... ի՞նչ ես անում այստեղ...

Մարկոսը ժպտում էր միայն: Հետո նա առա-

ջըսգրեց դաշտային տափակ կաթսայիկն ու ասաց.
— Մուշեղ հոպար, փլավ եմ բերել։
— Ախր ինչո՞ւ ես եկել... քեզ չի կարելի։
— Ոչինչ, Մուշեղ հոպար, հիմա խաղաղ է, բան չկա... Փլավ եմ բերել,—կրկնեց նա։
Ես ժպտացի։
—Ի՞նչ փլավ, ա՛յ տղա, գոնե շիլա ասա։
—Չէ՛, հոպար, փլավ է, իսկական քաշմիր... Ես եմ եփել...
Ու նա բաց արեց կաթսայիկի բերանը։ Իսկապես որ փլավ էր, քաշմիր։ Ես ինչպե՞ս կարող էի հրաժարվել իսկական քաշմիրուց, որը նույնպես ինձ ակամա հարազատ վայրերն էր տեղափոխում։
— Դե արի ուտենք, Մարկոս,— ասացի ես՝ դդալս հանելով։
— Չէ՛, ես կերել եմ... քեզ համար եմ բերել... Քեզ ու Տոլիկի...
Տոլիկը սիբիրեցի մի տղա էր՝ Անատոլի Ռումյանցևը։ Թեև քսան տարեկան էր, բայց կարծես երեխա լիներ։ Դեմքին դեռ աղվամազ կար, կարճլիկ ու նիհար էր և իր կազմվածքով Մարկոսից այնքան էլ մեծ չէր։ Բնավորությամբ էլ Անատոլին կարծես երեխա լիներ. և այդ էր պատճառը, որ Մարկոսը մտերմացել էր նրա հետ։
Մարկոսը հաճախ էր հրամանատարից խնդրում, որ իրեն զենք տան և թույլատրեն կռվել։ Ամեն անգամ, երբ նրան մերժում էին հասակի պատճառով, նա Տոլյային էր օրինակ բերում.
— Բա Տոլիկն ինչպե՞ս է կռվում։
— Դե Տոլիկը, եղբայրս, քանիմեկ թվի ծնված է, դու նրան այդպես մի՛ նայիր,—միշտ առարկում էր գնդապետ Արամյանը և հարցը դրանով էլ ավարտվում էր։
Մարկոսը փլավի կեսը լցրեց իմ կաթսայիկն ու ինքը գնաց խրամատի մյուս ծայրը, որտեղ Անատոլին էր։
— Շո՞ւտ կվերադառնաս գումակ,— ձայն տվեցի նրա հետևից։
Նա միայն ձեռքը թափահարեց և կորավ մթության մեջ։

* * *

Ուշ աշուն էր։ Ոչ կարգին ձյուն էր գալիս, որ ասեինք, թե ձմեռ է, ոչ էլ օրերը տաքանում էին։ Ձյունախառն անձրևի կաթիլները կարկուտի նման սառն էին, իսկ քամին այնպես էր սողոսկում մեր թաց շինելների միջով, որ թվում էր, թե ոչինչ չունեինք հագած։
Երեկոյան դեմ թեժ մարտեր եղան։ Մենք գրավեցինք մի բարձունք և գրոհեցինք ձորակում գտնվող թշնամու վրա, բայց ստիպված էինք նորից նահանջել և դիրքավորվել բարձունքի վրա։
Գրոհի ժամանակ մենք կորցրեցինք երեք հոգի։ Նրանք ընկել էին՝ թեք դարավանդի վրա։ Վաշտի հրամանատարն ստուգում անցկացրեց, և մենք իմացանք, թե ովքեր են զոհվել։ Նրանցից մեկը սիբիրցի Անատոլի Ռումյանցևն էր, Մարկոսի մտերիմը։ Ես խրամատում նստած մտածում էի, որ շուտով Մարկոսը կգա ու կիմանա ամեն ինչ, մտածում էի, թե ինչ խոսքերով պետք է մխիթարեմ նրան. երբ ասացին, թե մերոնցից մեկը շարժվում է։ Օգտվելով մթությունից, բոլորս զգուշությամբ գլուխներս դուրս հանեցինք խրամատից ու նայեցինք դարավանդի կողմը, սակայն ոչինչ չէր երևում։ Միայն երբ գերմանական պարաշյուտավոր հրթիռը լապտերի նման կախվեց երկնքից ու չորս կողմը լուսավորեց, մենք տեսանք, որ իրոք ընկածներից մեկը բավականին ձախ է տեղափոխվել։ Իսկ երբ հրթիռը մարեց ու մի պահ լռություն տիրեց, մենք լսեցինք մի թույլ ձայն.
— Եղբայրնե՜ր, օգնեցե՜ք...
Գերմանացիներն սկսեցին կրակել և մեկը մյուսի հետևից հրթիռներ արձակել։ Ինչպես երևում է, նրանք էլ էին լսել վիրավորի ձայնը։ Միանգամից մի քանի հոգի ցանկություն հայտնեցին օգնության գնալու, բայց վաշտի հրամանատարը թույլ չտվեց։ Վտանգավոր էր։ Միտք չուներ մի հոգու համար մի՛ քանի զինվոր կորցնել. պետք էր սպասել հարմար առիթի։ Այնինչ արդեն պարզորոշ լսվում էր վիրավորի ձայնը։
— Եղբայրնե՜ր, օգնեցե՛ք, կենդանի՜ եմ...
Բոլորը ճանաչեցին Անատոլի Ռումյանցևի ձայնը։ Նա էր։ Քեռի Շապիկյան, մի հասակավոր ուկրաինացի, այլևս չկարողացավ համբերել. նա վեր կացավ, որ վազի տղայի հետևից, բայց նրա թևը բռնեցին.
— Սպասիր, քեռի Շապիկա, մի բան կանենք։
— Ախր սիրտս կտոր-կտոր եղավ — ասում էր ծերունին,— տղան արյունաքամ է լինում։
Հենց այդ ժամանակ էլ խրամատում հայտնվեց Մարկոսը՝ փլավով լի կաթսայիկը ձեռքին։
— Այս ի՞նչ է պատահել, Մուշեղ հոպար։
— Ոչինչ,- որքան կարելի է, հանգիստ պատասխանեցի ես,—ոչինչ չի եղել, փլավդ տուր այստեղ, դու շուտ գնա, հիմա հարձակում կսկսվի։
Մարկոսը կաթսայիկը բաց արեց, որպեսզի իմ բաժինը տա, բայց ես չթողեցի։
— Բոլորը թող, միևնույն է, Տոլյան այստեղ չէ։
— Ինչպե՞ս թե... — վեր թռավ նա,— իսկ որտե՞ղ է։
— Կանչել են բաղբաժին, կոմսոմոլ են ընդունել։
— Հա՜... —ասաց նա ու նստեց դեմս։ Ես դդալը հանեցի, բայց այդպես էլ չկարողացա ուտել։ Հարկավոր էր, որքան կարելի է, շուտ թիկունք ուղարկել տղային։
— Գիտե՞ս ինչ, Մարկոս, այսօր ախորժակ չունեմ, ավելի լավ է շուտ գնաս այստեղից... կաթսայիկը կարող ես թողնել, Տոլյան կգա միասին կուտենք։



Հանկարծ Մարկոսը բռնեց իմ ուսից ու սկսեց ցնցել.

— Ի՞նչ ես ասում, Մուշեղ հոպար, ախր Տոլյան կոմսոմոլ էր... Դու ինձ խաբո՞ւմ ես, ի՞նչ է պատահել...

Այդ պահին նորից հրթիռ բարձրացավ օդ և բոլորը հետաքրքրված սկսեցին նայել՝ լանջի հարթությանը... Գերմանացիները սկսեցին կատաղորեն կրակել։

— Օ՜յ, օ՜յ... — մղկտում էր բեռի Շաքիկյան,— տղային կսպանեն, հարկավոր է օգնության հասնել։

— Մուշեղ հոպար, Տոլյան սպանվե՞լ է,— գրեթե ճչաց Մարկոսը։

— Չէ, աստված չանի, Մարկոս, վիրավոր է,— մրմնջաց Շաքիկյան,— տեսնո՞ւմ ես, շարժվում է։

— Բայց նրան կսպանեն, հոպար, կսպանե՜ն... տեսնո՞ւմ եք ոնց են կրակում...

— Չեն սպանի, Մարկոս,— աշխատում էի հանգստացնել ես,— հիմա կրակը կդադարի, օգնության կհասնենք։

Մարկոսը չգիտեր, թե ինչ անի։ Նա մեկ դիմում էր ինձ՝ մեկ, Շաքիկյանին, մեկ նայում էր դեպի հրամանատարը։ Հետո նա սեղմվեց ու քաշվեց խրամատի մի անկյունը։

Նորից հրթիռները մարեցին և հենց այստեղ էլ ես Մարկոսին աչքից կորցրեցի։ Ես շատ անհանգստացա, գիտեի, որ նա մի հուսահատ բան կանի, և չէի սխալվում։ Երբ նորից հրթիռը օդ բարձրացավ, մենք տեսանք, որ մեկը ամբողջ հասակով մեկ վազում է դեպի Ռումյանցևը, պարզ էր, որ դա Մարկոսն է։ Գերմանացիները կատաղի կրակ բացեցին։ Մարկոսն իրեն նետեց արկի մի փոսի մեջ՝ սպասելով հարմար առիթի, որպեսզի մոտենա Ռումյանցևին։ Բայց գերմանացիները կրակը չէին դադարեցնում և անընդհատ հրթիռ էին բաց թողնում։

Հրամանատարը կապվեց հրետանային մարտկոցի հետ և պահանջեց, որ կրակ բաց անեն գերմանական դիրքերի վրա։ Դա, իհարկե, օգնեց։ Տևեց մի կարճատև դադար ու շուրջը նորից ամեն ինչ թաղվեց խավարի մեջ, բայց երբ նորից հրթիռը օդ բարձրացավ, տեսանք, թե ինչպես երկու հոգի մտած երրորդի թևի տակ՝ մոտենում են մեր խրամատին։ Արդեն չնայելով կրակոցներին՝ ես վազեցի ընդառաջ ու ծանր վիրավոր Անատոլի Ռումյանցևին իջեցրինք մեր խրամատը։ Պարզվեց, որ բեռի Շաքիկյան չէր համբերել ու, օգտվելով մթությունից, ինքն էլ էր գնացել Տոլյայի հետևից։

Սանիտարներն անմիջապես առաջին օգնություն ցույց տվեցին Տոլյային և դնելով նրան ձիասայլակի վրա՝ ուղարկեցին սանիտարական գումարտակ։

Մարկոսն ուղեկցում էր ձիասայլակը։

* * *

— Բա՜, Հովակ ամի, ասում ես, թե կռվի մեջ փլավ չեն բաժանում,— ասաց Մուշեղը ժպտալով։

Ինչ խոսք, որ նա կատակում էր։ Մուշեղը լավ գիտեր Հովակ ամու խոսքերի իմաստը և հենց իր պատմությամբ հաստատում էր նրա ասածը։

# ՀԵՐՈՍՆԵՐ, ՈՐ ԾՆՎԵՑԻՆ ՄԵՐ ՋՈԿԱՏՈՒՄ



Հաղթանակի օրը՝ 1945 թվականի մայիսի 9-ը՝ ես դիմավորեցի Մոսկվայում: Որ ֆաշիստական հրեշը գլխովին ջախջախվել էր, որ կնքվել էր անվերապահ զինաթափման պայմանագիր, որ խստիվ հրամայված էր ամենուրեք դադարեցնել կրակը, մենք գիտեինք դեռևս նախորդ օրը: Մոսկվայի շատ կազմակերպություններ, ինչպես նաև կոմերիտական բարձրագույն դպրոցը, ուր այդ ժամանակ սովորում էի, հաղթանակի ցնծությունն արդեն ապրել էր:

Մենք դուրս եկանք մայրաքաղաքի փողոցները, տեսնելու իրոք համաժողովրդական այն խնդությունն ու հրճվանքը, այն անսահման ուրախությունը, որ համակել էին ամեն մի մոսկվացու, ամեն մի եկվորի սիրտ: Փողոցներում մարդիկ, մարդիկ, մարդիկ. ամեն տարիքի, դպրոցներից դուրս թռած աշակերտներ, սպիտակ խալաթավոր բուժաշխատողներ ու հիվանդներ, բանվորական արտահագուստներով ու չլվացած ձեռքերով բանվորներ, վարսավիրանոցներից կիսասափրած երեսներով ելած հաճախորդներ, վաճառասեղանները թողած խանութի աշխատողներ: Հաղթանակի լուրը լսելուց հետո մի պահ դադարել էր տրանսպորտի աշխատանքը: Բարձրահարկ շենքերի պատուհաններից ու պատշգամբներից կախվել էին մարդիկ, որոնք ինքնամոռաց թափահարում էին ձեռքերը, ցընծագին աղաղակում, լավ իմանալով, սակայն, որ անհասցե է իրենց ճիչը, որ համընդհանուր այդ խնդագին աղմուկի մեջ կողքի կանգնածի գոռոցն անգամ չի լսվում: Ողջագուրվում, գրկախառնվում, համբուրվում էին ծանոթ թե անծանոթ, մեծ թե փոքր, կին թե տղամարդ, շնորհավորում մեծ հաղթանակի առթիվ:

Երբեք չեմ մոռանա մի դեպք:

Մենք հավաքվել էինք շենքի մուտքերից մեկին, երբ այնտեղից դուրս եկավ տարեց մի կին: Նրան առաջին հանդիպողները մենք էինք, և նա ուղղակի գրկեց ընկերոջս: Նրա դեմքը մենք չէինք տեսնում, տեսնում էինք միայն ցնցվող ուսերն ու թիկունքը, լսում էինք հոգուց պոկված ու կոկորդում խեղդվող ձայներ և չգիտեինք ծիծա՞ղ է այդ, թե՞ լաց: Հետո տեսանք նրա դեմքը, տանջված, նիհար ու գունատ. դեմքը ժպտում էր, իսկ աչքերը լալիս էին:

Իմ տղան զոհվեց, բայց լավ է, որ այսօրվանից ոչ ոք չի զոհվի այլևս, — հազիվ լսեցինք նրա ձայնը:

Մենք համբուրեցինք նրա կոշտացած ձեռքերը, մոմի նման բարակ ու երկար մատները, նրան մեր կրծքին սեղմած՝ մենք կանգնեցինք երկար-երկար: Հետո մենք հեռացանք անխոս, մեկ անգամ էլ սեղմ գրկելով նրան, համոզված, որ այդ պահին աշխարհում ոչ մի մխիթարական խոսք չէր կարող գտնվել:

Տուն վերադարձանք կեսգիշերին: Փողոցները կամաց-կամաց սակավամարդ էին դառնում: Ցնծությունը շարունակվում էր տներում:

Երկար ժամանակ աչքս չէր կպչում, ականջներիս հնչում էին վշտահար մոր խոսքերը. «Իմ տղան զոհվեց»: Ինչքա՞ն այդպիսի տղաներ, ինչքա՞ն այդպիսի մայրեր: Ես հիշեցի իմ բոլոր ընկերներին, քանի՞սը չկան:

Եվ այսօր՝ մեծ հաղթանակի 20-րդ տարեդարձի օրը, կրկին ու կրկին հիշում եմ իմ այն ընկերներին, որոնք կարող էին այսօր լինել, վայելել հաղթանակի բերկրանքը, բայց նրանք չկան, որովհետև նրանք իրենց կյանքով բերեցին այս հաղթանակը:

Ես հիշում եմ մեր դասարանը՝ Երևանի Շահումյանի անվան դպրոցի 10-րդ «Բ» դասարանը: Մենք դպրոցն ավարտե-

ցինք 1941 թվականի հունիսի 17-ին: Չորս օր հետո լսվեց պատերազմի բոթը, ևս 10 օր, և մեր դասարանցի տղաներից ոչ ոք արդեն քաղաքում չէր, բոլորը գնացին պաշտպանելու հայրենիքը: Դասարանի 16 տղաներից չվերադարձան 6-ը:

— Իմ տղան զոհվեց, — հընչում է նորից ականջներումս:

— Ընկան իմ վեց ընկերները, որոնց հետ ամեն օր նույն օդն էինք շնչել 10 տարի շարունակ, — մտածում եմ ես: Իմ աչքև կենդանի կանգնում են նրանք, և ես ուզում եմ պատմել նրանց մասին, որովհետև նրանք հերոսներ են: Ուզում եմ պատմել Ալբերտի մասին, Արսլանյան Ալբերտի: Բարձրահասակ ու հաղթանդամ, լայն ճակատով, բացառիկ հոգատար ու սիրառատ՝ ընկերոջ նկատմամբ: Սովորում էր փայլուն, տետրակները՝ մարգարտաշար, թանաքի ոչ մի բիծ: Դասարանական մեր բոլոր կատակների ոգին էր, կազմակերպիչը: Դպրոցի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարն էր՝ բարեխիղճ իր բոլոր պարտականությունները կատարելիս: Նրան մենք «Վարդկոշիկ» էինք ասում, որովհետև ամենամեծ կոշիկն էր հագնում այդ հասակում՝ 44 համարի: Հայկական Թամանյան դիվիզիայի գնդերից մեկի կոմերիտական կազմակերպիչն ու քաջարի մարտիկներից եղավ նա,



Ռաֆիկ Ղազարյան

արժանացավ լեյտենանտի կոչման: Մարտական ընկերները պատմում են, որ ամենածանր պահերին նույնիսկ նա չի լքել ծիծաղն ու կատակը: Սակրավորի վտանգավոր գործում անվեհեր է միշտ եղել և զորամասի ուղին ականազերծելիս ընկել է ականի խարդախ պայթյունից: Ուզում եմ պատմել մեր մշտական գերազանցիկի՝ Սարգսյան Վազգենի մասին: Մշտական գերազանցիկ էին նրան կանչում, որովհետև գերազանցիկ էր առաջին դասարանից մինչև 10-րդը: 1935 թվականին՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 15-րդ տարեդարձի կապակցությամբ, քաղաքի ընտիր գերազանցիկների սակավաթիվ մի խմբի, որպես տոնական նվեր, թույլատրվեց



Սարգիս Ստեփանյան

ինքնաթիռով պտույտ կատարել քաղաքի վրա: Ինքնաթիռ մենք տեսել էինք միայն օդում, իսկ երբ օդանավակայանում տեսանք իսկական ինքնաթիռ, մեզ պատեց թերահավատության մի զգացում. «Մի՞թե կոմբայնի նման այս մեքենան կարող է օդ բարձրանալ», — մտածում էինք մենք: Մեր աղջիկներից մեկը, երբ արդեն հոնդում էր ինքնաթիռը, ծղրտաց. «Վազգե՛ն, իջի՛ր, մի՛ թռիր, վախենում եմ»: Վազգենը ժպտում էր: Այդ ժպիտը ուրախության ժպիտ չէր, այլ վտանգը դիմավորելու՝ բնավորության



Խաժակ Նիկողոսյան

նրա գիծը: Իսկ վտանգ, իրոք, կար: Այն ժամանակ օդային աղետներ հաճախ էին լինում, որովհետև օդանավագնացությունը զարգացման ու անվըտանգության այսօրվա մակարդակը չուներ: Այդ նույն ժպիտով նրա նկարը ստացա ռազմաճակատում, կուրծքը զարդարված շքանշաններով ու մեդալներով, այդ նույն ժպիտով էլ նա դիմավորել էր մահը:

Հիշում եմ Նիկողոսյան Խաժակին, հիշում եմ երկաթուղային համազգեստով՝ կայարանապետի տարբերանշաններով: Նա Երևանի մանկական երկաթուղու առաջին կայարանապետերից էր և դասերը պարապելուց հետո նրան կարելի էր տեսնել միայն մանկական երկաթուղում: Երբ դասարանում լրացվում էր հարցաթերթիկ, թե ով ինչ մասնագիտություն կընտրի դպրոցն ավարտելուց հետո, Խաժակը անվարան պատասխանում էր՝ երկաթուղային շինարար: Եվ հատկապես պարապում էր հանրահաշիվ ու երկրաչափություն, ֆիզիկա ու գծագրություն առարկաները: Զրահագնացքի վրա էլ նա տվեց իր կյանքը հանուն հայրենիքի ազատության, հանուն այսօրվա:

# ԱՇԽԱՐՀ, ՈՐՏԵՂ ՊԱՏԵՐԱԶՄ ԷՐ

*ՍԱՐԳԻՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ*

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

*Կոշիկներս մաշվել էին, մեր տան իրերի նման հնացել: Պարզ էր՝ պետք էր գնել նորը: Այդպես էր մտածում նաև իմ Բողարը, որը ամեն գիշեր տանում պահում էր կոշիկներս, բայց առավոտյան էլի գտնում էի: Զգտնել չէր կարելի, չէ՞ որ ուրիշը չունեի, երևի այդ գիտեր նաև իմ փոքրիկ շունը։*

*Օ՛, Բողարը գիտեր ամեն բան, բայց չգիտեր մի բան, որ նորը գնելու համար հարկավոր են ինչ-որ գույնզգույն թղթեր, որոնց փող են անվանում, իսկ առանց դրանց կարելի է միայն խանութի ցուցափեղկերին նայել, ինչպես հաճախ նայում էինք ես ու ինքը:*

*— Բողար, — դիմում եմ մի օր շանս, — այն սև, ամենալավ կոշիկը մի քանի օր հետո իմը կլինի:*

*— Հա՛ֆ, հա՛ֆ, —պատասխանում է Բողարը ու պոչը խաղացնում, երևի ծիծաղում է վրաս կամ գուցե նա էլ է ինձ երազող համարում:*

*— Իսկ ի՞նչ վատ բան է երազել, Բողար. չէ՞ որ ինքդ էլ ես սիրում:*

*Ու մի օր էլ, շատ օրերի նման, նստել էի մեր տան դռան շեմին: Բողարը պառկած էր կողքիս ու աչքերը կիսախուփ նայում էր մի կետի, երևի երազում էր: Երազում էր լավ-լավ կերակուրների, կովարար փիսիկների ու էլի ո՞վ գիտի, թե ինչերի մասին: Իսկ ես շոյելով Բողարի գլուխը, աչքերս նրա պես կիսախուփ անում ու պատմում էի մի հեքիաթ: «Լինում է, չի լինում, մի աշխարհ է լինում, աշխարհ, որտեղ կռիվ չկա, որտեղ հայրիկներն ապրում են իրենց տանը, իսկ նոր կոշիկներ՝ ինչքան ուզես: Բայց մի օր այս աշխարհում էլ ամեն ինչ խառնվում է: Սեթի հայրիկը գալիս է տուն ու փոխանակ ամեն օրվա նման համբուրի Սեթի այտերն ու կոնֆետներ տա, ասում է՝ պատերազմ է: Մայրիկը լաց է լինում, հայրիկը տխուր է, իսկ Սեթը չգիտի, թե ինչ անի: Ու այդ հիմար պատերազմի պատճառով Սեթի հայրիկը ու էլի շատ հայրիկներ գնում են կռվելու: Սկզբում Սեթը շատ չտխրեց. չէ՞ որ կարող է հայրիկի գործիքների հետ խաղալ ու գրիչով խզբզել՝ ինչքան ցանկանա: Բայց երբ այդ բոլորից ձանձրացավ, իսկ դա շատ շուտ եղավ, կարոտեց հայրիկին, նստեց նրա նկարի առաջ ու երկա՜ր նայեց, հետո համբուրեց, ուզեց նաև գրրկել ու ասել հայրիկին, որ աշխարհում բոլորից շատ նրան է սիրում, բայց նկարն ինչպե՞ս գրրկեր... ու լաց եղավ...» Պատմում ու ինքս էլ եմ լալիս, իսկ Բողարը նայում է զարմանքով. չգիտի, որ իմ ու հայրիկիս մասին եմ պատմում:*

*—Դո՛մբ, դո՛մբ, դո՛մբ...—Սթափվում եմ: Սթափեցնողը քաղաքի մեծ ժամացույցն է, որը խփում է հինգ անգամ: Դա նշանակում էր, որ, ուր որ է, մայրիկս կգա գործից ու կասի.*

*— Սեթ, ինչո՞ւ էլի ոչինչ չես կերել:*

*— Միասին կուտենք, մայրիկ, — կասեմ ես:*



*Ալբերտ Աբուկայյան*

Հիշում եմ Սարգիս Ստեփանյանին՝ մաթեմատիկական առարկաների փայլուն սովորողին, որ նույնպես որոշել էր շինարար դառնալ: Պայուսակը լիքն էր մաթեմատիկական տարբեր գրքերով: Մի անգամ, երբ դասարանում հարցնում էին, թե ով գեղարվեստական ինչ գիրք է կարդացել, Սարգիսը ամենայն լրջությամբ թվարկեց նաև Շապոշնիկովի և Վալցովի հանրահաշվի ձեռնարկը: Նա ընդունվեց հրետանային ուսումնարան, ավարտեց գերազանց առաջադիմությամբ: Մարտկոցի հրամանատար Սարգիս Ստեփանյանը դիպուկ կրակով պայմաններ է ստեղծել մեր զորքերի հարձակման համար, ավերել թշնամու դիրքերը, ոչնչացրել հակառակորդի բազմաթիվ տանկեր: Տանկերի դեմ անհավասար մարտում էլ ընկավ Սարգիսը: Ընկերներին գրած իր վերջին նամակում նա հաստատ համոզմունք էր հայտնում, որ հեռու չէ հաղթանակի օրը:

Հիշում եմ Ղազարյան Ռաֆիկին, մեր դպրոցի շնորհալի նկարիչին, լավ վոլեյբոլիստին: Օժտված սուր դիտողականությամբ, նա պատի թերթի էջերում ծաղրում էր դասարանի ու դպրոցի թերությունները: Նա սիրում էր գեղարվեստը, նկարչությունը: Ռաֆիկի նկարչական տետրերը քաղաքային ու ռեսպուբլիկական ցուցահանդեսների զարդն էին, ամենքի հիացմունքի



Հետո կսովորեմ դասերս ու կքնենք: Առավոտյան պղնձալարերով կամրացնեմ կոշիկներիս պոկված մասերն ու մայրիկիս հետ միասին կնստենք բարձրախոսի մոտ: Մայրիկս կարտասվի, իսկ ես կասեմ.

— Մամ ջան, մի՛ արտասվիր, հայրիկը շուտով կգա:

Հետո ես կգնամ դպրոց, իսկ մայրիկս՝ գործի:

Բակի դուռը բացվեց, մայրիկս էր, ինձ համբուրեց ու մտավ ներս:

— Սեթ, քեզ համար նոր կոշիկներ եմ գնել, տես, լա՞վն է, — լսվեց ներսից: Ականջներիս չհավատացի.

— Մայրիկ, ինչ ասացի՞ր, չլսեցի:

Մայրս կրկնեց ասածը, ճիշտ էի լսել:

Ամեն ինչ փոխվեց իմ աչքերում. մեր փոքր տունը մեծացավ, մեծ աշխարհ դարձավ ու ես պարում էի այդ մեծ աշխարհում՝ բախվելով մերթ թախտին, մերթ սեղանին: Հատակի ճռռոցը երբեք այդքան ուժգին չէր հնչել: Ուրախացել էր նաև Բողարը: Բարձրացած ոտքերի վրա՝ ոստյուններ էր անում տեղում:

Ուրախությունից երեկոյան քունս չէր տանում, շատ ուշ քնեցի: Երազումս տեսա, իբր, այն կտորից, ռետինե ներբաններով կոշիկներս միայն ու միայն երազ էին ու մաշված կոշիկներս ծիծաղում էին վրաս: Վախեցած արթնացա: Ամեն ինչ իր տեղումն էր, նոր կոշիկներս դրված էին կողքիս: Հները դարձյալ չկային:

Իսկ բարձրախոսը հաղորդում էր՝ «Մեր զորքերը առաջ են շարժվում, թշնամին նահանջում է»:

Դա նշանակում էր, որ հայրիկս շուտով կգա:

Այդ օրը ես փոխվել, բոլորովին ուրիշ տղա էի դարձել: Ուզում էի գրկել ու համբուրել մորս, Բողարին, բոլորին: Պատրաստ էի անգամ համբուրել ընկերոջս՝ Արմենին, որի հետ մի օր առաջ կռվել էի: Պատրաստ էի բոլոր գունավոր մատիտներս տալ Երվանդին, Խաչիկին, Կարենին ու Մարոյին: Այդ օրը ուրիշ օր էր:

տարկան: Ռազմաճակատային ծանր պայմաններում Ռաֆիկը շարունակում էր նկարել: Լույս չէր տեսնում ոչ մի կայծակ-թերթիկ, որ չլինեին Ռաֆիկի սրամիտ նկարները: Իր խիզախությամբ ու կենսուրախությամբ նա արժանացել է զորամասի ջերմ սիրուն:

Քսանչորս տարի է անցել մեր վերջին հանդիպումներից: Սակայն այսօր էլ նրանք մեզ հետ են, մեր դասարանցիների շրջանում: Հաճախ հավաքվում ենք մենք՝ դպրոցական ընկերներով: Դրանց թվում են ռազմաճակատային փորձություններով անցած, բազմաթիվ շքանշանների արժանացած Հովհաննես Հակոբյանը, Աբրահամ Աբրահամյանը, Դավիթ Մովսիսյանը, Գևորգ Մելիքյանը, Էդուարդ Աբրահամյանը, Միքայել Պետրոսյանը, Գագիկ Մանուկյանը, Պավլիկ Խրիմլյանը, Աշոտ Բաբայանը, որոնք այժմ կարևոր աշխատանք են կատարում արտադրության ու գյուղատնտեսության մեջ, պարտիական ու սովետական օրգաններում: Եվ ամեն հավաքի ժամանակ մենք առաջին բաժակով խմում ենք մեր զոհված ընկերների կենացը, որովհետև նրանք անբաժան են մեզանից, որովհետև մեր այսօրվա համար մենք պարտական ենք նրանց, որովհետև նրանք իրենց կյանքով բերեցին մեծ հաղթանակը:



Այսպես մասնակցեց մեր դասարանը Հայրենական մեծ պատերազմին:

**ՌՈՒԲԵՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

# Քաջարի Վարդիկը



Մենք հիմա չգիտենք, ինչո՞ւ էր հայրը նրան Կոստի անունը տվել: Մենք գիտենք, որ նրա ազգանունը Վարդեվանյան էր՝ Կոստի Վարդանի Վարդեվանյան: Գիտենք, որ նա մասնակցել է Խալխին-Գոլի և Խասանի ճակատամարտերին, որ գնդակոծել է Մաններհայմի գիծը, որ մասնակցել է Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ազատագրման մարտերին, գիտենք նաև, որ նա Հայրենական պատերազմի հերոսներից մեկն է:

Ահա նրա լուսանկարը՝ կարմիրբանակայինի հագուստով: Նա նման է բոլոր այն տղաներին, որոնք ճակատ մեկնելուց առաջ կամ հենց ճակատում կանգնում էին քաղաքների մայթերի վրա ահագին, արկղակերպ լուսանկարչական սարքերի առաջ, նկարվում և մի տասնհինգ րոպե հետո նկարը ստանում և շտապ ուղարկում տուն՝ հարազատներին: Նրա դեմքն էլ այրված է արևից: Նրա աչքերն էլ վճիտ են ու պարզ, հայացքը հանգիստ, մեղմ: Նա նման է բոլոր այն տղաներին, որոնք մի օր գնացին պատերազմ, գնացին և ետ չդարձան: Նա էլ ետ չդարձավ: Մնաց պատերազմի դաշտում, Վոլգայի մարզի տափաստաններում: Բայց նա, մեր սեգ լեռների որդին, ընկավ հերոսի մահով, կատաղի թշնամու դեմ թեժ մարտի պահին: Այս քաղվածքը, որ տպագրում ենք այստեղ, վերցված է № 295 հրետանային գնդի ձեռագիր ամսագրից, որ լույս է տեսել 1942 թվականի հոկտեմբերին.

«... Կռվի բռնվելով Ստալինգրադի հեռավոր մատույցներում, նա ստացավ շարքից դուրս եկած մի թնդանոթ: Երկու օր, գիշեր ու ցերեկ նա չհեռացավ փչացած թնդանոթից, նորոգեց և, վերջապես, նրանով էլ մտավ կռվի մեջ: Գուցե այդ էր պատճառը, որ նա այդքան սիրում էր իր հրանոթը, գուցե այդ պատճառով էլ թշնամու տանկերով նրա վրա եկող խոյընթաց ռմբակոծիչ օդանավերը չկարողացան ստիպել նրան՝ թողնել իր սիրելի հրանոթը:

1942 թվականի օգոստոսի 23-ին մարտկոցի վրա նետեցին վաթսուներեք ռումբ: Բռնկվեցին մարտական լիցքերի լրացուցիչ արկղները: Վարդեվանյանը ձեռքերով դեսուդեն նետելով դրանք, ոչնչացումից փրկեց մարտկոցն ու իր ընկերներին...

Եվ հրանոթները եկան կանգնեցին Ստալինգրադի տակ:

1942 թվականի օգոստոսի 31-ի մառախլապատ առավոտը հրանոթները գրավեցին իրենց վերջին դիրքերը: 150 տանկ շարժվում էին դեպի մարտկոցը: Եվ առաջինը դիմավորեց նրանց Կոստին: Նա խփեց վեց տանկ և չորս ավտոմեքենա: Ծանր պահին նա հրաժարվեց մտնել ապաստարան, և թշնամական ռումբը կտրեց նրա՝ կոմունիստ Վարդեվանյանի հ ե ր ո ս ա կ ա ն կյանքի թելը»:

Նա կյանքը տվեց իր հարազատների, ժողովրդի և հայրենիքի ազատագրման գործին: Նա ընկավ՝ հաստատ իմանալով, որ երբեք չի մոռացվելու, չի մեռնելու, որովհետև ավելի մեծ կյանք չկա, քան այն կյանքը, որ տրվում է հայրենիքի և ժողովրդի փրկության համար:

«Կ.Վ. Վարդեվանյանը,—գրում են նրա հրամանատարները,— ընկավ Յագոդնի ագարակի մոտ,

1942 թվականի օգոստոսի 31-ին, և հետմահու արժանացավ կառավարական բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի»։

«Ընկավ,— ասված է հրամանում։— Այդպես ընկնում են միայն բարձր կանգնած վիթխարի կաղնիները, նա, ով բարձրություն չունի՝ ընկնել չի կարող։ Նա, ով սողում է կյանքում՝ կարող է ճխլվել միայն։ Հայոց լեռների արծիվն ընկավ արծվի մահով։ Նա սավառնեց անհուն տափաստանի երկնքում և սավառնեց բոլորից վեր։ Թշնամու տանկերը չկարողացան հանդիսավոր երթով մտնել Վոլգային. նրանք ստիպված էին ետ դառնալ ու պահվել բարձունքի հետևում, նրանք ստիպված էին փոխել իրենց ճանապարհը. նրանց այրում ու ջարդում էր Վարդևանյանն իր մարտկոցով։ Բայց թշնամին գազազած էր. նա օդ հանեց իր կործանիչ ինքնաթիռները և կրակի հեղեղ թափեց մարտկոցի վրա։ Ընկան հերոս տղայի ընկերները. նա փոխարինեց նրանց. մենակ կանգնեց թշնամու ահարկու ուժերի դեմ։ Թշնամին կատաղեց...»

Ընկավ նաև Կոստի Վարդևանյանը։ Բայց նրա մոտ չգրանցվեց նույնիսկ տան հասցեն։ Նրա թարմ գերեզմանի առաջ կենդանի մնացածները երդվեցին վրեժ լուծել անարգ թշնամուց։ Ուկրաինական հանրապետության Իվանովո-Ֆրանկովսկ քաղաքի մարտական փառքի թանգարանում կախված են նրա դիմանկարը և նրա կատարած քաջագործությունների նկարագրությունները։ Ամեն տարի նոր զինակոչիկները գալիս կանգնում են այդ դիմանկարի առաջ, հիանում նրա քաջագործություններով և երդվում Կոստի Վարդևանյանի նման սիրել ու պաշտպանել հայրենի հողը։

# ՀԵՏԱԽՈՒՅԶԻ ԳԻՇԵՐԸ

ԳԵՂԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*Ճակատային նամակներ։ Դրանք պահվում են շատ խնամքով։ Չէ՞ որ այդ նամակները նրանց հիշատակն են, ովքեր չեն վերադարձել տուն, ովքեր իրենց կյանքը նվիրել են ազատության համար։*

*Մեր տանն էլ կան ճակատային նամակներ։ Հորս նամակներն են, որ պահում ենք առանձին թղթապանակում։ Վերջին նամակը թվագրված է 1944 թվականի սեպտեմբերի 15-ին։ Նամակները շատ են։ Բայց ինձ համար հատկապես թանկ է նրանցից մեկը։ «Եղիր այնպես անվեհեր, ինչպես Սաշան»,— գրել է հայրս ինձ՝ իր յոթնամյա որդուն։*

*Ո՞ւմ մասին է գրել հայրս։*

* * *

*Մայորի առջև կանգնել էր 14—15 տարեկան մի տղա։ Նրա տեսքը ծիծաղելի էր։ Հագել էր բավական մեծ կոշկախթաններով կոշիկներ, արևից խունացած գալիֆե շալվար և դրել ծակծկված մի պիլոտկա։ Բայց ինչ-որ բան զսպում էր մայորի ծիծաղը։ Այդ նրա աչքերն էին։ Այդպիսի աչքեր նա տեսել էր միայն այն մարդկանց մոտ, ովքեր մեծ վիշտ էին ապրել։*

*— Անունդ ի՞նչ է,— մեղմ հարցրեց մայորը։*

*— Սաշա։*

*Եվ կռահելով հաջորդ հարցը, տղան ավելացրեց.*

*— Տասնհինգ տարեկան եմ։*

*Մայորը լռեց։ Լռեց նաև տղան։ Ո՛չ, նրա աչքերը չէին խնդրում, որ իրեն թողնեն հեծյալ դիվիզիայում։ Մայորը շատ «փախստականների» էր հանդիպել։ Սա նրանց նման չէր։ Տղայի աչքերը պահանջում էին... Պահանջում էին համարձակորեն, համառորեն։*



*Լռությունը առաջինը խախտեց մայորը.*

*— Ինչպե՞ս վարվենք քեզ հետ։ Թիկո՞ւնք ուղարկենք։ Դու դեռ պետք է սովորես։*

*Տղան լուռ էր։ Միայն զգացվում էր, թե ինչպես նա ամբողջությամբ լարվեց։*

*— Դե լավ, մտածի՛ր, նստի՛ր։*

Մայորը վերցրեց ծխախոտը: Ծուխը խորը ներս քաշեց:

— Ծխու՞մ ես: Ո՛չ: Ճիշտ է, պետք չէ ծխել: Պառկիր քո մասին:

Պատմածը անկապ էր: Տղան հաճախ լռում էր:

«... Հայրս և մայրս գերմանացիները կախեցին: Ռոստովի տակ: Պարտիզական տոմսեր էին գտել նրանց մոտ: Ես վրեժ կլուծեմ նրանց համար»:

Մայորը ձախ ձեռքով ջղաձգորեն շոյեց սև, փոքրիկ մորուքը: Հետո նա արագ վեր կացավ և կանչեց կապավորին.

— Տար ընկերոջս Ամբրոսիի մոտ: Միայն թե հագուստ կփոխեք:

Սաշան երախտագիտությամբ նայեց մայորին և, տարօրինակ քայլվածքով, դուրս եկավ կապավորի հետևից:

Հեծյալ դիվիզիայում Սաշային բոլորը սիրեցին: Սիրեցին խիզախության և ճարպկության համար: Այդ հատկությունները նա ցուցաբերեց առաջին իսկ կռվի ժամանակ, երբ վերցրեցին խոշոր մի բնակավայր:

Այդ կռվի համար Սաշան ստացավ «Արիության համար» մեդալ և մայորից մի նվեր՝ փոքրիկ, փայլուն բրաունինգ:

Բայց Սաշան հեծելակ երկար չմնաց: Շուտով նրան հրապուրեցին դիվիզիայի հետախույզները: Համոզված էին, որ տղան ընդունակ է, քաջ, նրանից լավ հետախույզ դուրս կգա: Եվ չսխալվեցին:

Մի քանի անգամ Սաշան գնացել էր դժվար հանձնարարությունների կատարելու և միշտ հաջողությամբ էր ավարտել:

Մի անգամ դիվիզիան հրաման ստացավ գրավել երկաթուղային կայարանը: Կարդալով հրամանը՝ մայորը իր մոտ կանչեց հետախուզախմբի հրամանատարին.

— Առանց հետախուզելու չի կարելի գործել: Հանգուցային կայարան է, ուժեղ ամրացված: Մտածեք ո՞ւմ կարելի է ուղարկել:

— Կարծում եմ Սաշան հարմար է,— պատասխանեց լեյտենանտը:

— Ինչո՞ւ համոզված ես,— զգույշ հարցրեց մայորը:

— Այդ կայարանը նա լավ գիտի: Եվ այդպիսի հետախուզությունն էլ նրա համար նորություն չէ...

Սաշան կանգնել էր հետախույզների շրջանի մեջ: Փոքրիկ, պատառոտված շալվարով, բոբիկ, նա շատ նման էր գյուղական փոքրիկ հովվի:

— Կարծես, վատ չի,— մի անգամ էլ Սաշային նայելով, ասաց լեյտենանտը: — Գերմանացիները քեզ, իհարկե, հեծելակի տեղ չեն դնի: Զենքերը հանձնեցի՞ր: Դե, ուրեմն լավ է: Հիմա կարող ես գնալ:

Սաշան պետք է վերադառնար երեկոյան: Բայց նշված ժամին նա չվերադարձավ: Կայարան ուղարկեցին մեկ ուրիշ հետախույզի: Նրանից էլ կեսգիշերին իմացան, որ Սաշային գերմանացիները բռնել են: Մի երկաթուղային էր այդ տեսել: Կենդանի էր, թե ոչ, հայտնի չէր:



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ԾԱՐԱՄԲԵՅԱՆԻ

Տագնապալի լուրը արագ տարածվեց դիվիզիայում: Մայրը մինչև առավոտ աչքերը չփակեց: Սեղանին կուտակվել էին ծխախոտի մնացորդները: Ի՞նչ էր պատահել Մաշային:

... Ժամապահը տղայի վրա ոչ մի ուշադրություն չդարձրեց: Հետախույզը հաջողությամբ անցավ նաև երկրորդ պահակակետը: Նրան բռնեցին երեկոյան: Իսկ դա եղավ այսպես: Մաշան պատրաստվում էր վերադառնալ: Հանձնարարությունը արդեն կատարված էր: Բայց այդ պահին նա լսեց մոտեցող գնացքի աղմուկ: Նայեց: Բաց վագոնների վրա կանգնած էին տանկեր. մեկ, երկու, երեք... քսան: «Լավ էր, որ տեսա,— մտածեց նա:— Թե չէ մերոնց համար անակնկալ կլինեն...»

Մաշան հաշվեց տանկերը: Նա չէր նկատել, թե ինչպես է գերմանական սպան հետևում իրեն: «Հա՛լտ»: Անսպասելի գոռոցից Մաշան տեղում քարացավ: Ավտոմատը ուժգին սեղմվեց ծոծրակին:

Մաշան մտածեց՝ ի՞նչ անել: Պիջակի ներսի գրպանում էր գտնվում բրաունինգը: Եվ ինչու նա ատրճանակը չհանձնեց լեյտենանտին: Իսկ հիմա...

Փողոցում սպան մտրակով հարվածում էր Մաշային:

— Կխոսե՞ս: Պատասխանի՛ր: Որտեղի՞ց է քեզ մոտ ատրճանակը: Ո՞վ է ուղարկել,— գոռում էր երկարավիզ սպան:

Եվ նորից հարվածներ: Դժվար էր զսպել, բայց Մաշան լռում էր:

— Դու կխոսե՞ս, լակո՛տ,— ատամների արանքից խոսեց սպան:

Նա դանդաղ սկսեց հանել ձեռնոցները: Վերցրեց ատրճանակը:

— Դե, իսկ հիմա դու կասե՞ս:

Մաշան լուռ նայում էր սպայի ձեռքին. «Գոնե շուտ կրակեր»: Կրակոց: Գնդակը խրվեց պատի մեջ՝ գլխից քիչ վերև: Երկրորդ գնդակը վիրավորեց ձախ ականջը: Կրակոցներ... Ֆաշիստը զվարճանում էր:

— Տանե՛լ: Առավոտյան. եթե չխոսի, կախե՛լ,— հրամայեց նա զինվորներին...

Լուսաբացից առաջ մերոնք գերմանացիներին ուժգին հարվածով դուրս շպրտեցին կայարանից: Մաշային գտան կայարանի շենքի մութ նկուղում: Գերմանացիները չէին հասցրել նրան գնդակահարել:

Լռության մեջ անշարժ կանգնել էին դիվիզիայի մարտիկները: Մայրի առջև կանգնել էր բոլորովին ալեհեր Մաշա-հետախույզը: Ալեհեր՝ իր 15-ամյա պատանության տարիներին:

— Ես նրանց ոչինչ չասացի,— շշնջաց Մաշան:

Արցունքի խոշոր կաթիլները գլորվում էին մայրի աչքերից:



Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# ՄԱՅՐԱԿԱՆ ՍԻՐՏ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Օրերը հողի բուրմունքը բերին,
Արցունքը է կաթում բալենու ճյուղից:
Գարնան ծյունածաթաց ճանապարհներին
Պառաված մի կին նայում է գյուղից:
Նայում է սարին ու ճամփին բարակ,
Որ վեր է ելնում անտառի փեշով.
Մի արթուն կարոտ, մի ջերմին կրակ
Վառվում են սրտում անցյալի հուշով:
Կովի գնացին այդ ճամփով ոլոր,
Երբ ծայնը երկրիս հնչում էր հատու,
Այդ ճամփով կռվից չդարձան մի օր
Քաջ որդին նրա ու հայրը որդու:
Օ՜, սիրտ մայրական, քնքշություն վճիտ,
Կարոտդ երբեք, երբեք չի մեռնում,
Աչքերիդ լույսով, միջով երազիդ
Գիշեր ու ցերեկ նայում է հեռուն:
Նա խոր է ու մեծ իմ Լոռվա ձորից,
Նա բարություն է կյանքին արարում,
Ամեն գարնան հետ ծնվում է նորից,
Գարնան գետի պես ելնում, վարարում:
Օրերը հողի բուրմունքը բերին,
Արցունքը է կաթում բալենու ճյուղից,
Գարնան ծյունածաթաց ճանապարհներին
Պառաված մի կին նայում է գյուղից:




# ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ ՈՒՂԵԿՑՈՒՄ Է ՆՐԱՆՑ, ՈՎՔԵՐ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ԴՐԱՆ ՀԱՍՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Ջ. ՀԱՄՐԱՔՅԱՆ

*Հայաստանի Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության ռեսպուբլիկական խորհրդի նախագահի տեղակալ*

Այս օրերին, երբ մեր անծայրածիր հայրենիքի բազմազգ ժողովուրդները աշխատանքային նորանոր նվաճումներով են պատրաստվում դիմավորելու սովետական կարգերի հաստատման 50-ամյակը, պիոներիան ևս պատրաստվում է իր փոքրիկ, բայց պատվավոր նվերը բերելու մեծ հոբելյարին: Մեր հայրենիքի պիոներական դրուժինաները արդեն դուրս են եկել հետաքրքիր գործերի և համարձակ նախաձեռնությունների ուղեծիր:

«Կոմունիզմը կարելի է կառուցել աշխատանքով, աշխատանքով և միայն միլիոնների աշխատանքով», — այսպես է ստուգատեսի «Աշխատանքի լենինյան հերթափոխի» նշանաբանը: Սա նշանակում է, որ ամենուրեք քո ձեռքերի համար, պիոնե՛ր, գործ կգտնվի:

Եթե դու, պատանի բարեկամ, քո հայրենի քաղաքում կամ գյուղում տնկես ու խնամես մեկ ծառ, ապա շատ շուտով կբարձրանան պիոներական ստվերախիտ պուրակներ և զբոսայգիներ, ճանապարհները կվերածվեն գեղեցիկ ծառուղիների, «կանաչ աղմուկով» կլցվի քո շրջապատը:

Գորիսի շրջանի պիոներական դրուժինաները պարտավորվել են տնկել և խնամել տասնհինգ հազար ծառ ու թուփ, վերցրել են զբոսայգիների խնամքը, իսկ Լենինականի և Մարտունու շրջանի պիոներները որոշել են տնկել պիոներական փառքի անտառներ, որտեղ հանդիսավոր օրերին կկազմակերպվեն հավաքներ և հանդիպումներ:

Հայաստանի պիոներները պետք է ակտիվ մասնակցեն հեռավոր տայգայում՝ Շուշենսկոյեի շրջանում կառուցվող աշխարհի խոշորագույն հիդրոկայանի շինարարությանը: Այդ հսկա կառույցի համար անհրաժեշտ է 500 հազար տոննա մետաղի ջարդոն: Այսօր ռեսպուբլիկայի պիոներական դրուժինաները զեկուցում են հայրենիքին, որ Շուշենսկոյեի հիդրոկայանի համար արդեն հանձնել են հարյուրավոր տոննա մետաղի ջարդոն, ստեղծել են սպորտհրապարակներ, հոկտեմբերիկների համար խաղասենյակներ:

Այս օրերին փոստատարները ավելի հաճախ են ծեծում պիոներական դրուժինաների «դըռները», դրուժինաների «բազմագույն վզկապների» ակումբները հարստացնում են նոր նամակներով ու ցուցանմուշներով, որոնք պատմում են ստուգատեսի ընթացքում նրանց բարեկամների կատարած հետաքրքիր և ռոմանտիկ գործերի մասին:

Դեռևս ամռանը «Ո՞ւմ ջոկատն է ամենալավը» համամիութենական մրցության հաղթողների՝ Արտեկում կայացած հավաքում պիոներները կոչ արեցին դրուժինաներում ստեղծել բազմագույն վզկապների միություններ, ամուր, բարեկամական կապեր հաստատելով աշխարհի իրենց հասակակիցների հետ: Այդ կոչը լայն արձագանք գտավ բոլոր պիոներական դրուժինաներում, և շուտով ստեղծվեցին առաջին ակումբները, իրենց տարբերանշաններով, թեմատիկ երեկոներով և բարեկամական փոխայցելություններով:

Հետաքրքիր շարժում է ծավալվել Երևանի 26 կոմիսարների շրջանի պիոներական դրուժինաներում՝ յուրաքանչյուր դրուժինա սփյուռքահայ դպրոցի բարեկամն է: Արդեն առաջին ծանրոցներն ու նամակներն են ուղարկվել Ֆրանսիայի, Հնդկաստանի, Լիբանանի, Եգիպտոսի ու Կիպրոսի հայկական դպրոցներին և ստացվել պատասխանները:

* * *

Անցյալ տարի ամռանը Սևանի գեղատեսիլ ափին գտնվող Նորադուզի տուրիստական ճամբարում հանդիսավոր կերպով բարձրացվեց պատանի տուրիստների ռեսպուբլիկական հավաքի դրոշը:

Հայաստանի բոլոր շրջաններից և քաղաքներից ժամանած պատանի տուրիստները զեկու-

ցեցին իրենց կատարած հայրենագիտական աշխատանքների մասին: Կարմիր և կապույտ մատիտներով գծված արշավային երթուղիներում նշված էին նոր գործարաններ և ֆաբրիկաներ, առողջարաններ և պիոներական ճամբարներ, հիդրոկայաններ և նորակառույց ավաններ՝ Տաթևգէս, Լուսավան, Ագարակ, Արփա-Սևան ջրանցք և այլն:

Արշավների ընթացքում պիոներները հավաքել էին արժեքավոր էքսպոնատներ, կազմել տեղանքների քարտեզներ, ծանոթացել յոթնամյակի մեծ կառույցներին, ստեղծել հուշատետրեր և տեղեկագրեր, հետաքրքրվել, թե ի՞նչ է տվել հայրենիքը երեխաներին. նոր դպրոցներ, առողջարաններ, ճամբարներ, մարզահրապարակներ, կինոթատրոններ և այլն:

«Յոթնամյակի կառույցների հետքերով».— այսպես է կոչվում տուրիստական էքսպեդիցիան, որտեղ իրենց կատարած շնորհալի աշխատանքներով աչքի



ընկան հատկապես Սիսիանի, Լենինականի, Եղեգնաձորի պատանի տուրիստները:

Արշավի ժամանակ յուրաքանչյուր պիոներ պետք է իմանա, թե ինչպես է ապրել ու մարդկանց երջանկության համար պայքարել Վլադիմիր Իլյիչ Լենինը, ինչպես են նրա պատգամները կյանքի կոչում կոմունիստական պարտիան և սովետական ժողովուրդը:

Յուրաքանչյուր կարմիր փողկապավորի համար թանկ է Վ. Ի. Լենինի անունը: Անցյալ տարի, պիոներական կազմակերպությունը Վ. Ի. Լենինի անունով կոչվելու 40-ամյակի կապակցությամբ պիոներիայի դրոշի վրա ամրացվեց Լենինի շքանշանը: Դա բարձր և պարտավորեցնող պարգև էր: Վ. Ի. Լենինի նկատմամբ պիոներների ունեցած մեծ սիրո ապացույցներից մեկը դրուժինաներում գործող լենինյան սրահներն ու անկյուններն են: Երևանի № 85 դպրոցի Վալենտինա Տերեշկովայի անվան դրուժինայում պիոներները ստեղծել են դպրոցական լենինյան թանգարան, որն ունի հինգ բաժին: Դրուժի-



նայում չկա ոչ մի ջոկատ, որը աշխատանք կատարած չլինի թանգարանի կազմակերպման գործում:

Թանգարանի ստեղծումը մեծապես օգնել է պիոներներին՝ նամակագրական կապ հաստատելու լենինյան վայրերի հետ, հանդիպումներ կազմակերպելու Լենինին անձնական ծանոթ մարդկանց հետ: Դրուժինայում բոլոր պիոներները պայքարում են «Դրուժինայի լավագույն լենինյանի» կոչմանն արժանանալու համար:

* * *

Յուրաքանչյուր պատանի լենինյան պետք է լավ իմանա իր հայրերի և մայրերի անցած մարտական ուղին, հպարտանա փառքի դափնիներով ծածկված անցյալի տարեգրքով, որի էջերում գրված են բազմաթիվ անմահ անուններ, որոնք իրենց կյանքը նվիրաբերել են քո



պայծառ ապագայի համար, պատանի պիոներ: Ուրեմն մեծարիր նրանց հիշատակը, ծաղկապատիր հերոսների հուշարձանները, քո ընկերների հետ միասին ստեղծիր հերոսների փառքի սենյակներ և թանգարաններ: Կազմակերպեցեք հուշ-երեկոներ և հավաքույթներ, լույս ընծայեք պատի թերթեր և ցուցափեղկեր:

Գորիսի շրջանի Ակսել Բակունցի անվան դպրոցի պիոներները արդեն սկսել են գրի առնել շրջանի կոմերիտական կազմակերպության տարեգիրքը: Այդ անձնվեր կոմերիտականներից շատերը հերոսի մահով ընկան հայրենի լեռնաշխարհի ազատագրման պայքա-

րում, իսկ կենդանի մնացածները այժմ պիոներների առջև բացել են լուսանկարների և անմոռաց հիշողությունների մի հարուստ աշխարհ:

Ստուգատեսի ընթացքում բազմաթիվ պիոներական դրուժինաներում ստեղծվեցին սահմանապահների պատանի բարեկամների ջոկատներ, որոնք ուսումնասիրում և սովորում են սահմանապահի դժվարին, միաժամանակ հետաքրքիր գործը, հաճախակի հյուր լինում նրանց մոտ, կազմակերպում համատեղ միջոցառումներ, հարստացնում նրանց գրադարանները:

Սահմանապահների հետ վաղեմի բարեկամական կապերի մեջ են Անիի, Լենինականի, Ախուրյանի, Հոկտեմբերյանի, Մեղրու պիոներները:

* * *

«Առանց գիտելիքների չկա կոմունիզմ»— սա նշանակում է՝ յուրաքանչյուր պիոներ պետք է հարստացնի իր գիտելիքները, դառնա կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցը, կարողանա շարունակել տիեզերքի նվաճման՝ հայրերի սկսած գործը, հայտնագործի նոր «հրաշքներ» մարդկանց երջանկության համար, ստեղծի նոր ատոմային սառցահատներ, կառուցի էլեկտրակայաններ, թափանցի երկրի ընդերքը, փոխի գետերի հունը: Իսկ դրա համար հարկավոր է սովորել, սովորել, սովորել:

Պիոներական դրուժինաներում այժմ գործում են «Ուրախների և հնարամիտների ակումբները» (ՈւՀԱ), որի անդամները ամենահետաքրքրասեր և ուշիմ երեխաներն են: Ակումբները կազմակերպում են հանդիպումներ գիտնականների և ինժեներների հետ, լինում են ինստիտուտներում և գիտա-հետազոտական լաբորատորիաներում, հայտարարում տեխնիկական սարքերի կոնկուրսներ, օլիմպիադաներ, լույս ընծայում «Ի՞նչ գիտես տիեզերքի մասին» պատի թերթեր:

* * *

Այժմ «Պիոներական լապտերիկի» լույսերն են վառվում ամեն տեղ՝ դպրոցում, հասարակական վայրերում, արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսության դաշտերում, զբոսայգիներում և մանկապարտեզներում: Հատկապես աշխույժ եռուզեռի մեջ են «Շտապ օգնության» շտաբները: Երբ որևէ մեկը վատ է սովորում, բացակայում է դասից կամ թույլ է տալիս անվայել արարք, հընչում է ազդանշանային զանգը: Զհանդուրժողները դուրս են գալիս ռեյդի:

«Պիոներական լապտերիկի» անդամնե՛ր, տագնապ բարձրացրեք, եթե դատարկ է մնացել նստարանը, եթե մեկը չարամտորեն վնասում է դպրոցական գույքը, ոչնչացնում ծառերն ու ծաղիկները:

Եղի՛ր ազնիվ և անհաշտ՝ Ձերժինսկու նման, օգնության ձե՛ռք մեկնիր ընկերոջդ, բացատրի՛ր սխալները, սիրելի գո՛րծ գտիր նրա համար:

Ստուգատեսի ստարտից հետո անցել են շատ ամիսներ: Ռեսպուբլիկայի մեծ և փոքր դրուժինաներում, մայրաքաղաքում թե հեռավոր գյուղերում, պիոներները, մասնակցելով ստուգատեսին, նախաձեռնել են հետաքրքիր և օգտակար գործեր: Թե ո՞ր դպրոցի շենքի վրա կհուրհրա հաղթանակի կարմիր աստղը, պարզ կլինի ապագայում, իսկ այժմ դեպի գործ, պատանի՛ բարեկամներ, եղեք հետևողական, պրպտող, հնարամիտ և նախաձեռնող:

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈ

ՄԻՔԱՅԵԼ ՇԱԹԻՐՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Շահումյանը թոթափեց իրենից այդ հիշողությունները և ժպտալով ասաց կնոջը.

— Այո, բայց չէ՞ որ ես նրա նման հայր չունեի... — Ու հետո, արդեն լուրջ ավելացրեց.— Դե, դու իզուր ես անհանգստանում, սիրելիս: Հիմա այնպիսի ժամանակներ են, երբ մարդիկ շատ շուտ են հասունանում:

Նա նորից շրջվեց, որ մտնի լողարանը, երբ լսվեց դռան զանգը:

— Ահա, սա երևի հենց ի՞նքը՝ մեր չափից ավելի լուրջ երիտասարդն է,— գոչեց Շահումյանը և շտապեց միջանցք:

Բայց նա սխալվում էր. եկել էին Ջափարիձեն, Ֆիոլետովը, Ազիզբեկովը և Յակով Զևինը: Միջանցքում լսվում էին նրանց ձայները. «Բարի գալուստ, Ստեփան Գևորգևիչ... Ստեփան ջան, որ իմանաս ինչքա՞ն ուրախ ենք» և այլն: Հետո նրանք խմբով մտան ճաշասենյակ, որտեղ հավաքվեցին նաև բնակարանի անդամները: Ֆիոլետովը, ակնոցների տակից թարթելով կարճատես աչքերը, ամաչկոտ ասաց.

— Ներեցեք մեզ, Եկատերինա Սերգեևնա, այս անսպասելի ներխուժման համար... Մենք միայն մեկ րոպեով...

— Եկել ենք աչքի պոչով Ստեփան Գևորգևիչի խուզած մորուքին նայենք ու գնանք,— ավելացրեց Զևինը:

— Դահ, Ստեփան ջան, դեմքդ բոբիկացել է,— ծիծաղում էր Ազիզբեկովը, բարեկամին զննելով:
— Չէ, իսկապես, Ստեփան, ես այս անաստվածներին ասում եմ. թողեք այսօր ընտանիքի հետ անցկացնի, վաղը կտեսնենք, բայց սրանց պահե՞լ կլինի: Եկել են՝ գնանք ու գնանք, գոնե կես րոպեով...

— Լավ, լավ, ինչպե՞ս չեք ամաչում, բարեկամներ,— ընդհատեց նրանց Եկատերինա Սերգեևնան,— մի՞թե մենք միշտ ուրախ չենք եղել ձեզ տեսնելու մեր տանը... Նստեցեք, խնդրում եմ, իսկույն վերարկուներդ հանեք և նստեցեք:

— Լավ,— համաձայնեց Ազիզբեկովը:— Եկեք նստենք, մինչև Կորգանովն ու Սուրենը գան, ու իսկույն կգնանք:

— Սուրե՞նը,— ուրախացավ Շահումյանը:— Նա գիտի՞, որ ես եկել եմ:

— Մենք զանգահարեցինք Կորգանովին և խնդրեցինք իր մեքենայով անցնի Մարտիկյանի մոտ ու այստեղ բերի Սուրենին,— բացատրեց Ջափարիձեն:— Մի կես ժամից նրանք կգան:

— Այ դա հիանալի է,— Շահումյանը շրջվեց կնոջ կողմը:— Դեհ, Քեթո ջան, դու ստիպված պիտի լինես թեյիդ վրա ջուր ավելացնել, հը՞...

— Մի՛ անհանգստանա, ես էն գլխից արդեն մի տաս հոգի հյուր նախատեսել էի...

— Ահա՜ թե ինչ էր նշանակում քո այն «հըմ»-ը... — ծիծաղեց Շահումյանը:

Այդ ժամանակ դրսից լսվեց մեքենայի հռինդը: Ջափարիձեն մոտեցավ լուսամուտին, դուրս նայեց և գոչեց.

— Ահա՜ և Կորգանովն ու Սուրենը: Ինչ շուտ եկան:

Շահումյանը նորից շտապեց միջանցք, և շուտով այնտեղից հասավ ուրախ ողջագուրանքների աղմուկը: Հետո նրանք եկան ճաշասենյակ, որտեղ Ստեփան Գևորգևիչը սկսեց լույսի տակ զննել որդուն: Սուրենը գիմնազիստական վերարկուով էր, որի գոտուց կախված էր մի ատրճանակ և մի նռնակ:

— Օ՜, ինչ ահարկու տեսք ունես դու,— ծիծաղեց Ստեփան Գևորգևիչը:— Կապավորի համար մի քիչ շատ չէ՞...

Սուրենը մի հայացք նետեց մոր կողմը և ակներևորեն խուսափեց ինչ-որ կարևոր բան հայտնելուց: Սակայն Եկատերինա Սերգեևնան կիսավշտացած-կիսաժպտալով ինքն ասաց այդ բանը.
— Դե նա ամենևին էլ կապավոր չէ, գնդացրորդ է, գնդացրորդ...

Սուրենը, հանկարծակիի եկած, կաս-կարմիր կտրեց և շրջվեց եղբոր կողմը.
— Բերնիցդ թռցրի՞ր ես...

Հիմա էլ Լևոնը փայլեցրեց աչքերը այդ անլուր մեղադրանքից: Տեսնելով նրա սեղմած բռունցքները, Ջափարիձեն շտապեց մեջ խառնվել:

— Այդ ե՞ս եմ ասել, ե՞ս...— գոչեց նա:— Հապա ինչպե՞ս. հայրդ այստեղ չէր, իսկ դու այդպիսի պատասխանատու որոշում էիր ընդունել...

— Սպասիր, իսկ ինչո՞ւ ինքդ չէիր ասում մորդ այդ մասին,— զարմացած և մեղմ կշտամբանքով հարցրեց Շահումյանը:

— Ի՞նչ ես ասում, հայրիկ,— գրեթե հուսահատ գոչեց Սուրենը:— Չէ՞ որ առանց այդ էլ քո պատճառով գիշերները չէր քնում, այս մեկն էլ որ ես ավելացնեի՝ ի՞նչ կատացվեր...

Սկիզբը՝ նախորդ համարում:

Ծանումյանը զուսպ խանդաղատանքով նայեց որդուն և ասաց.

— Լավ, լավ, ների՛ր ինձ. ես միշտ մոռանում եմ, որ դու արդեն մեծացել ես ու տանտիրուհի ես դառել...—Ու շոյեց մյուսների կողմը:— Դե, հիմա արդեն բոլորը հավաքվեցին և մենք կարող ենք հանգիստ նստել ու զրուցել... Միայն հանգիստով հայտարարում եմ՝ բացարձակապես թյան մասին ոչ մի խոսք: Պարզապես ընտանեկան երեկույթ է լինելու: Համաձա՞յն եք:

Հյուրերն իրար նայեցին, իսկ Ֆիլիպովն ասաց.

— Կարելի է, ինչո՞ւ չէ... Ապա, Սերյոժկա, եկ գիրկս, վաղուց ակնոցներիս հետ խաղ չես արել...

Սերյոժկան ուրախ ցատկեց ու թառավ նրա ծնկին, Եկատերինա Սերգեևնան գնաց խոհանոց: Սոֆիկը հանկարծ նայելով մի կողմում լուռ կանգնած Կորզանովին, ինչ-որ բան հիշեց:

— Օ՜յ, մոռացել էի... Մարիամ, մենք տանը յոդ ու վիրակապ ունե՞նք: — Ապա դիմեց Կորզանովին.— Եկեք լույսի տակ, Գրիգորի Նիկոլաևիչ, տեսնենք ի՞նչ է եղել ձեզ...

Կորզանովը Կովկասյան բանակի ռազմա-ճանապարհային կոմիտեի նախագահն էր: Նրա հագին զինվորական շինել էր, միայն թե առանց ուսադիրների: Սոֆիկի խոսքի վրա նա թթվեցրեց դեմքը.

— Այ տղա, ասացի, որ ոչինչ չկա, ի՞նչ ես մարդկանց իրար խառնում:

— Բայց ի՞նչ է եղել, ինչի՞ համար են պետք յոդն ու վիրակապը,— զարմացած և տագնապալից հարցնում էին ներկաները:

— Գրիգորի Նիկոլաևիչի վրա բիչ առաջ կրակեցին,— զուսպ հուզմունքով բացատրեց Սոֆիկը:

— Կրակեցի՞ն... Ո՞վ, որտե՞ղ...—վեր թռավ տեղից Ծանումյանը:— Գրիգորի Նիկոլաևիչ, դե ձայն հանիր...

— Թե ով էր՝ չիմացանք,— պատասխանեց Կորզանովը:—Ճանապարհին, երբ գնում էի Սոֆիկին բերելու, անկյունից հանկարծ կրակեցին մեքենայի վրա: Բախտավորը՝ փոխանակ արագացնելու ընթացքը, կանգնեցրեց մեքենան, դուրս քաշեց ատրճանակը և ինքը կրակեց մթության մեջ: Այդ ժամանակ էլ լսվեց երկրորդ կրակոցը և գնդակը շինելիս թևերից մի կտոր պոկեց, անա տեսեք...— Կորզանովը ցույց տվեց պատռված թևքը:— Բայց մարմինս չի վնասվել, ուստի ոչ յոդ է պետք, ոչ էլ վիրակապ:

— Հետո, հետո ի՞նչ եղավ,—հուզված հարցնում էին ներկաները:

—Հետո որտեղից-որտեղ վազելով հայտնվեց մեր կարմիրգվարդիական պարեկը, և կրակողները խուսափեցին: Նայեցի, տեսնեմ պարեկայինների մեջ Սոֆիկն էլ է,— շարունակեց Կորզանովը:—



Բակույն նստեցրի մեքենան ու բերեցի այստեղ...

Ծանումյանը հերթով նայեց ներկաներին ու մտահոգ հարցրեց.

— Ուրեմն, այստեղ գործերն այդքա՞ն լրջացել են արդեն...

— Այո, Սոսիկյան,— ասաց Զախարիչը:— Դա ինքնին մոտավորականների գործն է:

— Ես ձեզ բան եմ ասում. դրանք այսօր դեռ անկյունից են կրակում, իսկ վաղը բացարձակ ապստամբության կպարծրացնեն,— բռունցքով սեղանին զարկեց Ագիգբեկովը:

— Այո, այն օրից, ինչ այստեղ եկավ «Վայրենի



գիմնազիայի» թաղամասային գունդը՝ նրանք շատ ազդեցիկ են դառել,— հաստատեց Կորգանովը։

— Մուսավա՞թ...— մտազբաղ արտասանեց Շահումյանը։— Անդրկովկասի ամենաչնչին կուսակցությունը, որը չունի ոչ կազմակերպություն, ոչ տրադիցիաներ և ոչ էլ ազդեցություն... Եվ հանկարծ դառավ մեր ամենավտանգավոր հակառակորդը...

— Դե, դրանց թե՛ ոսկին, թե՛ զենքը, թուրքերն ու գերմանացիներն են,— ասաց Ազիզբեկովը։— Նրանք հույս ունեն կտրել Անդրկովկասը Ռուսաստանից և նվաճել Թուրքիային։

— Իսկ Անգլիա՞ն,— հարցեց այն կողմից Ջեփիրը։

— Նա էլ հույս ունի դաշնակցականների ու մենշևիկների օգնությամբ տիրանալ Կովկասին։ Կարծում եք՝ պատահակա՞ն է, որ այդ գեներալ Դենստերվիլը բանակն ավտոմեքենայով և մի խումբ սպաներով՝ ձգտում ինչ գնով էլ լինի Բաքու հասնել։

— Ի դեպ, ի՞նչ արեցիք նրանց,— Շահումյանը արագ շրջվեց դեպի Ջափարիձեն։

— Երբ դու Թիֆլիսից հայտնեցիր նրանց գալու մասին, մենք կարգադրեցինք Էնզելիի ռազմա-հեղափոխական խորհրդին, որ ոչ մի կերպ թույլ չտան անգլիացիներին այստեղ գալ։ Նույնիսկ հրետակիր նավակ ուղարկեցինք նրանց օգնության։ Եվ գեներալն ստիպված եղավ Էնզելիից ետ դառնալ։

— Բայց նրանք շատ հեռու չեն գնացել, մի՛ անհանգստացեք,— ասաց Կորգանովը.— նստած են Համադանում և սպասում են հարմար առիթի, որ նորից այստեղ խցկվեն։

Ե՞հ, որ մտածում եմ՝ ուղեղի գլուխդ պտույտ է գալիս, թե ինչ պիտի գլուխ հանենք այդքան թշնամիներից. անգլիացիներ, թուրքեր, գերմանացիներ, որոնցից ամեն մեկն այստեղ իր յուրայինները ունի,— հոգոցով արտասանեց Ազիզբեկովը։

Եվ այստեղ Սուրենը հանկարծ խորամանկ ժպիտով գոչեց.

— Համոզված եմ հայրիկ, որ այս ամբողջ ժամանակ դուք միայն քաղաքական հարցերի շուրջն եք խոսում...

Բոլորը բարձրաձայն ծիծաղեցին։ Հետո Ջափարիձեն դառն ժպիտով ասաց.

— Հապա ի՞նչ անենք, եղբայր... Վախենում եմ, Ստեփան, թե այսօր չհաջողվի ընտանեկան երեկո անցկացնել։ Ախր այնքա՞ն կարևոր հարցեր են կուտակվել, որոնց մասին պիտի խոսենք...

— Իհարկե, հայրիկ,— հաստատեց Սուրենը։— Բա հիմա «ընտանեկան երեկոյի» ժամանա՞կ է... Եկեք ազնվորեն խոստովանենք, որ այդ որոշումն անիրագործելի է, ու գնացեք կոմիտե՝ գործերով զբաղվելու։

— Հապա սրա՞ն տես,— կեղծ վրդովմունքով գոչեց Ազիզբեկովը։— Այ տղա, բա դու հեչ չե՞ս մտածում, թե ում հետ ես այդպես խոսում... Ախր դեմդ Շահումյանն է, հասկանո՞ւմ ես, Ստեփան Շահումյանն է, հասկանո՞ւմ ես, Ստեփան Շահումյանը, «Կովկասի Լենինը»։

— Ի՞նչ անենք,— համառորեն թափ տվեց գլուխը Սուրենը։— Նրա որոշումը, մեկ է, սխալ է...

— Իզուր չեն ասել. «Ծաղիկը թփից հեռու չի ընկնի»,— հիացմունքով բրբջաց Ֆիոլետովը։

Շահումյանը վճռական ոտքի ելավ.

— Մենք կարո՞ղ ենք հիմա հավաքել կոմիտեի անդամներին,— դիմեց նա Ջափարիձեին։

— Դե նրանք վաղուց հավաքվել, մեզ են սպասում,— մեղավոր ժպիտով պատասխանեց նա։

— Ահ, անպիտաններ, ուրեմն՝ եկել եք, որ ինձ տանեք և ինչ-որ խա՞ղ եք խաղում...— Շահումյանը դարձավ դեպի երեխաները.— Եկեք այսպես պայմանավորվենք, երեխեք. այսօր ես կգնամ գործերով զբաղվելու, իսկ վաղը... վաղն անպայման ձեզ հետ կլինեմ, համաձա՞յն եք։

— Իհարկե,— շտապով պատասխանեց Լևոնը:

— Առավել ևս, որ Սերյոժկան հիմա պիտի քնի,— վրա բերեց Մարիամը:

Ու հենց այդ պահին ներս մտավ Եկատերինա Սերգեևնան, բերելով մատուցարանի վրա շարած թեյի բաժակները:

— Ահա և կարող եք մի-մի բաժակ թունդ թեյ խմել...— ասաց նա, և հանկարծ զարմանքով նկատեց, որ բոլորը ոտքի վրա են ու շփոթված թաքցնում են իրենից հայացքները:— Սա ի՞նչ է, դուք գնո՞ւմ եք:

Շահումյանը վերցրեց նրա ձեռքից մատուցարանը, դրեց սեղանին և անվճռական պատասխանեց.

— Հըմ, Կեկե ջան, հասկանո՞ւմ ես... Պարզվեց, որ մենք պիտի գնանք կոմիտե...

— «Մե՞նք»... ուրեմն դու է՞լ ես գնում:

— Այո, սիրելիս... ես երեխաների հետ պայմանավորվեցի, և նրանք չեն առարկում:— Նա գրկեց կնոջն և ասաց մեղավոր տոնով.— Մի՛ վշտանա և մի՛ բարկացիր, այդպես է պետք, հասկանո՞ւմ ես: Պետք է:

Շահումյանը չհասցրեց նույնիսկ զգեստը փոխել և գնաց տնից նույն կիսամաշ զինվորական հագուստով, որով եկել էր: Եկատերինա Սերգեևնան նստած էր սեղանի մոտ, հայացքը մի կետի հառած: Երեխաները լուռ շրջապատել էին նրան: Հետո Մարիամը գրկեց մոր ուսը և հպեց գլուխը նրա գլխին:

— Այ, այսպես էլ եղել է միշտ,— հոգոցով պատասխանեց մայրը:— Ողջ կյանքս այդպես է եղել, Մարիամ ջան:

Սուրենը մոտեցավ մյուս կողքից և մոր մոտ նստելով, մեղմ ասաց.

— Բայց դու նրանից չպիտի նեղանաս, մամա... Հայրիկը լավն է, շատ լավը:

Եկատերինա Սերգեևնան դանդաղ շրջվեց նրա կողմը, ուշադիր նայեց և հետո ժպտաց.

— Այդ դո՞ւ ես ինձ ասում... Իհարկե, լավն է, այնքան լավը, որ երբեմն ուզում եմ, որ նա միայն մերը լինի՝ իմն ու ձերը... Բայց դա անկարելի է, այդպիսի մարդը չի կարող պատկանել միայն մի ընտանիքի...

— Եվ շա՜տ էլ լավ է, որ այդպես է, մամա,— համոզված գոչեց Սուրենը:

Եկատերինա Սերգեևնան ոչինչ չպատասխանեց: Միայն երջանիկ ժպիտով նայում էր ինչ-որ հեռուն:





# ԵՐԿՆԱԳՈՒՅՆ ՀՈՒԼՈՒՆՔԸ

Հ. Կ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ՄԱՐԻԱ ԿՐՅՈՒԳԵՐ

## ԴԵՌ ԱՎԵԼԻ ԶԱՐՄԱՆԱՀՐԱՇ ԲԱՆԵՐ[1]

— Հիանալի է,— հայտարարեց քաղաքի Պրեզիդենտը: Նա հենց նոր էր վերջացրել իր մեղրաբլիթը և արդեն շատ բարի էր դարձել: — Իսկ ինչ վերաբերում է ձեր պատմած գործին, ես ինքս կզբաղվեմ դրանով: Բայց ինչպե՞ս անեմ:

— Եկեք հենց հիմա միասին գնանք մեր այգին,— առաջարկեց Կարոլինկան:

— Հըմ,— մտածմունքի մեջ ընկավ Պրեզիդենտը: — Մեծ հաճույքով կգայի: Բայց, ինչպես գիտեք, ուրիշ շատ կարևոր գործեր ունեմ: Թեև պետք է խոստովանել, որ ձեր գործն էլ չափազանց կարևոր եմ համարում:

— Այո՛, այո՛, չափազա՜նց կարևոր է,— տաքացած բացականչեց Պետրիկը,— դուք անպայման պետք է գաք մեզ հետ. էլ մտածելու կարիք չկա:

— Իսկ հնարավոր չէ՞, որ ես էլ ձեզ պես անտեսանելի դառնամ: Գոնե մի քանի րոպեով... Ինչքա՜ն եմ երազել այդ մասին:

Պետրիկն ու Կարոլինկան շտապ խորհուրդ արին՝ կարելի՞ է արդյոք դիմել այդ վտանգավոր քայլին: Չէ՞ որ հուլունքը դրանից ավելի կգունատվի: Բայց ուրիշ ճար չկար:

Նրանք օգտվեցին առիթից, որ վարորդը գնացել էր բուֆետ գազով ջուր խմելու:

— Արա՛գ, արա՛գ: Մենք ոչ մի րոպե չպետք է կորցնենք: — Պրեզիդենտը նստեց ղեկին, Պետրիկը՝ նրա կողքին, իսկ Կարոլինկան առյուծների հետ՝ հետևում: Դարպասի մոտ մնալու մասին առյուծները լսել անգամ չուզեցին: Նրանք անպայման ուզում էին տեսնել այգին և բլրակը, իսկ հետո կարուսել նստել:

— Դե, գնացինք:

Մոտորն աղմկեց, և, մինչև որևէ մեկը գլխի կընկներ, թե ինչ է կատարվում, կարմիր ավտոմեքենան դարպասից դուրս սուրաց:

## ԿԱ՛ՆԳ ԱՌ. ԲՌՆԵՑԵ՛Ք ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆ

Պրեզիդենտը հիանալի էր վարում մեքենան: Նա ճարպկորեն առաջ էր անցնում ավտոբուսներից և տրամվայներից, կտրում-անցնում էր հրապարակները և, հենց այն է, պետք է սլանար քաղաքի հինգ կամուրջներից մեկի վրայով, երբ հանկարծ անցորդներից մեկը կանգ առավ և բացականչեց.

— Մի նայե՛ք այն կարմիր ավտոմեքենային: Առանց վարորդի է գնում: Իսկ մեքենայում երկու փոքրիկ առյուծներ են նստած:

Բոլորը դարձան դեպի կարմիր ավտոմեքենան, որ այդ պահին շտապ խորհրդակցություն էր տեղի ունենում: Ի՞նչ անել:

— Երևի ստիպված պիտի լինենք նորից տեսանելի դառնալ,— ասաց Կարոլինկան: Բայց Պետրիկը առարկեց.

— Հո ամեն ինչ հուլունքի վրա չպիտի՞ գցենք: Գնացինք առաջ:

Ասելը հեշտ է, անելը՝ դժվար: Նախ՝ խաչմերուկներում և մայթերի երկայնքով հսկայական բազմություն էր հավաքվել. բոլորը ուզում էին անպայման տեսնել առանց վարորդի գնացող մեքենան և նրանով ճանապարհորդող առյուծներին:

Հանկարծ խաչմերուկներից մեկում ոստիկանը մեքենան կանգնեցնելու նշան արեց: Հապա մի փորձիր կանգնեցնել մեքենան, որի ղեկի մոտ ոչ ոք չկա: Եվ ոստիկանին ուրիշ ոչինչ չէր մնում անելու, քան զարմանքից բերանը բացել և նայել հեռացող մեքենայի հետևից: Բայց քիչ անց, նա ցած իջավ իր բարձունքից և տեղեկացրեց բոլոր պահակակետերին.

— Ուշադրությո՛ւն: Քաղաքում մի կարմիր ավտոմեքենա է սուրում: Ղեկի մոտ ոչ ոք չկա, իսկ մեքենայում երկու առյուծ են նստած և սպառնագին մռնչում են:

Ճիշտն ասած առյուծները մռնչալու մասին խելքի չէին էլ մտածում, բայց ոստիկանն այդպես ասաց, որպեսզի բոլորը գիտակցեն, թե ինչ վտանգ է իրենց սպառնում:

Ոստիկանի բարձրացրած տագնապը իսկույն տվեց իր արդյունքները. քաղաքով մեկ ոռնացին շչակները, իսկ բարձրախոսներից հնչեց մի պատկառելի բաս.

— Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն: Քաղաքի փողոցներով մի կարմիր ավտոմեքենա է սուրում, որը սպառնում է բնակիչների անվտանգությանը: Մեքենան լի է սարսափելի արյունարբու առյուծներով: Ուշադրությո՛ւն: Կանգնեցրե՛ք մեքենան:

— Հիմա ի՞նչ անենք,— հարցրեց Պրեզիդենտը: Նա իրեն շատ լավ էր զգում: Նրան շատ էր դուր գալիս իրենց բռնած գործը, և նա կանգնելու ոչ մի մտադրություն չուներ:

---

[1] Սկիզբը՝ տե՛ս 1964 թ. №№ 9, 10, 11, 12 և 1965 թ. №№ 1, 2, 3:

— Գնացինք առաջ,— վճռեցին Պետրիկն ու Կարոլինկան։

— Այո, բայց եթե մեզ բռնե՞ն խաչմերուկի վրա, կարմիր լույսը վառված ժամանակ, երբ մենք ստիպված պիտի լինենք ուրիշ մեքենաների հետ կանգ առնել։

— Իսկ մենք ինչո՞ւ ենք խաչմերուկներով գնում որ,— հարցրեց Պետրիկը,— մի՞թե մի այնպիսի փողոց չկա, որին ուրիշ փողոցներ չհատեն։

— Իհարկե կա,— հանկարծ մտաբերեց Գրեգիգենոր,— նույնիսկ ես եմ կտրել հանդիսավոր բացման ժապավենը։ Դա քաղաքը շրջանցող խճուղին է։

Նրանք էլի մի քանի փողոցներ անցան, որոնց վրա համարյա պահակակետեր չկային և հայտնվեցին լայն ու ողորկ խճուղու վրա։

— Ա՜յ հենց սա է այդ խճուղին,— բացականչեց Գրեգիգենոր։ Նրա տրամադրությունը նորից էր բարձրացել։ — Իսկ դուք չէի՞ք ուզենա քաղաքի շուրջը պտտվել։




— Մեծ հաճույքով,— ասացին բոլորը, այսինքն՝ Պետրիկը, Կարոլինկան և երկու առյուծները,— մեծ հաճույքով, բայց դա, երևի, երկար կտևի, ախր մեզ պետք է շուտ հասնել Ծաղիկների փողոց։

Առյուծները նույնիսկ խնդրեցին մեքենան մի րոպեով կանգնեցնել, որպեսզի մի քիչ վազվզեն խոտերի վրայով. նրանց թաթերը թմրել էին, որովհետև այնքան հաճախ ստիպված եղան իրենց բարի առյուծների տեղ դնել։

— Դե լավ,— համաձայնեց Գրեգիգենոր,— կարող եք մի րոպե վազվզել, միայն թե ոչ ավելի։

Հրճվելով, որ ազատության մեջ են, առյուծները ուրախ-ուրախ դուրս ցատկեցին ավտոմեքենայից և սկսեցին վազվզել, սկզբում՝ շրջանաձև, իսկ հետո՝ ութ գրելով։ Իսկ այդ պահին անտեսանելի եռյակը մեքենայի մեջ նստած խորհրդակցում էր, թե ինչ պետք է անել անվտանգ կերպով Ծաղիկների փողոցը հասնելու համար։

— Ինձ թվում է, որ պետք է ուղիղ գնալ, իսկ հետո թեքվել աջ,— խորհուրդ տվեց Պետրիկը։

Դուցե և իսկապես, դա լավ առաջարկ էր, բայց հանկարծ ավտոմեքենայի ազդանշանների ձայներ լսվեցին։ Կասկած չկար՝ ինչ-որ ավտոմեքենա էր գալիս։ Մի՞թե հետապնդողներին հաջողվել է գտնել իրենց հետքը։

Այդպես էլ կա. մի ինչ-որ մեքենա այնպիսի անասելի արագությամբ էր սլանում իրենց կողմը, որ նրանք հազիվ կարողացան կարմիր ավտոմեքենան թաքցնել թփերի մեջ։ Բայց վատն այն էր, որ խաղով տարված առյուծները չհասցրին թաքնվել։ Այդ պահին հետապնդողները մոտեցան։ Առյուծներից մեկը, ոչ մի վատ բան չսպասելով, ատամների արանքում մի ծաղիկ սեղմած՝ վազվզում էր կանաչ խոտի վրայով, իսկ մյուսը՝ մեջքի վրա պառկած թաթերն էր թափահարում։

Մեքենայից իսկույն դուրս ցատկեց Ֆիլոմենան իր հսկայական հովանոցով, իսկ նրա հետևից՝ մի քանի քաղաքային պահապան։ Մեր եռյակը, այսինքն՝ Պետրիկը, Կարոլինկան և Գրեգիգենոր դեռ ուշքի չէին եկել, երբ Ֆիլոմենան և պահապանները հարձակվեցին առյուծների վրա։ Սկսվեց մի անհավասար պայքար։ Առյուծները պաշտպանվում էին հերոսաբար։ Պահապանները իրենց հետ հաստ պարաններից հյուսված մի ցանց էին վերցրել և հենց այդ ցանցով էլ նրանց հաջողվեց կապկպել առյուծներին։ Հետո առյուծներին դրեցին ավտոմեքենայի մեջ և տարացին կենդանաբանական այգու կողմը։

— Պետք է փրկե՜լ նրանց,— բացականչեց Կարոլինկան, հենց որ մեքենան շարժվեց։— Մենք պարտավոր ենք փրկել առյուծներին։

— Իհարկե, պետք է փրկել,— համաձայնեց Գրեգիգենոր։

## ՏԱՐՕՐԻՆԱԿ ԳԱԶԱՆԸ

Կարմիր ավտոմեքենան կանգ առավ կենդանաբանական այգու հետևի մուտքի մոտ։ Այգու մյուս ծայրին, հենց ջրավազանի մոտ, որտեղ փղերն էին ապրում, նրանք արտասովոր աշխուժություն նկատեցին։

— Այնտե՛ղ վազենք,— հրաման արձակեց Պետրիկը և ինչքան որ ուժ ուներ առաջ նետվեց։

Բայց Պրեզիդենտը.. ոչ մի կերպ չէր հասնում նրանց հետևից։

— Ես մի քիչ արդեն մոռացել եմ վազելը,— ամաչելով արդարանում էր նա։ —Չե՞ք կարող մի փոքր ավելի դանդաղ վազել։

— Ախր կարող են մեր առյուծներին համբույան փակել վանդակի մեջ,— հուզվեց Պետրիկը։ Բայց միաժամանակ նա սկսեց կարեկցել Պրեզիդենտին՝ խեղճն այնպե՜ս էր հևում։

Հենց այդ պահին նրանց կողքով երկու ուղտ էին անցնում՝ այգու պահապանն արձակել էր նրանց, որպեսզի մի քիչ ազատ ման գան։

— Մենք կգնանք այս ուղտերին հեծած։ Դուք իբրև Պրեզիդենտ, նստեցեք, խնդրեմ, առաջինին, իսկ ես և Կարոլինկան կտեղավորվենք երկրորդի վրա։

— Չգիտեմ, կկարողանա՞մ արդյոք ես — քրթմնջաց Պրեզիդենտը։ Բայց իսկույն երևաց, որ նա սաստիկ ուզում էր ուղտ նստել։ — Ես ամբողջ կյանքս երազել եմ մի այսպիսի անապատային նժույգ հեծնել։

— Դե, իհարկե, կարող եք,— ոգևորեցին նրան Պետրիկն ու Կարոլինկան և օգնեցին նրան տեղավորվել ուղտի վրա։ Պարզվեց, որ ուղտը շատ բարի և համբերատար կենդանի է։ Իրենք էլ երկրորդ ուղտին նստեցին։

Նրանց բախտը բերեց, որ կենդանաբանական այգու բոլոր աշխատողները զբաղված էին Ֆիլոմենայի բերած առյուծի արտասովոր ձագերի ուսումնասիրությամբ։

Դրա համար էլ ոչ մեկն ուշադրություն չդարձրեց քաղաքի արշավող ուղտերի վրա, որոնց հեծյալները չէին երևում։ Երբ Պրեզիդենտը, Պետրիկը և Կարոլինկան կանգ առան խռնված ամբոխի մոտ, առյուծներն արդեն վանդակների մեջ էին։

— Ինչ գնով էլ լինի, պետք է վանդակը բացել,— շշնջաց Կարոլինկան։

— Հիմա այդպես էլ կանենք,— անհոգ հայտարարեց Պետրիկը։ — Ես մի հիանալի բան եմ մտածել։

— Ա՜խ, վախենում եմ, որ այդեն ոչ մի բան չօգնի։

— Սպասի՛ր, նախ լսիր, թե ինչ եմ մտածել։ Մենք պետք է այնպես անենք, որ այս ամբոխը հեռանա վանդակի մոտից, իսկ հետո...

— Դե լավ, ես կփորձեմ,— համաձայնեց Կարոլինկան, լսելով Պետրիկի առաջարկած պլանը։ — Ես կաշխատեմ ինչ-որ ձևով գրավել նրանց ուշադրությունը, իսկ դու այդ ժամանակ պան Պրեզիդենտի հետ ազատիր առյուծներին։

Քիչ անց կենդանաբանական այգում իրար որ սկսվեցին աներևակայելի բաներ կատարվել։ Այնպիսի բաներ, որ նոր առյուծների վանդակի մոտ կանգնածներից ոչ մեկը, նույնիսկ կենդանաբանական այգու պան դիրեկտորը, կյանքում նման բան չէր տեսել։ Չգիտես ինչու բոլոր փղերը շարք կանգնեցին և կնճիթները վեր տնկելով՝ ինչքան որ ուժ ունեին սկսեցին բառաչել։ Բոլորի համար պարզ էր, որ այստեղ ինչ-որ դավադրություն կա։ Այդ բոլորի պատճառը Կարոլինկան էր։ Նա էր գնացել փղերի մոտ և համոզել, որ նրանք այդպես անեն։ Չէ՞ որ երկնագույն հուլունքի կախարդանքի առանձնահատկություններից մեկն էլ այն էր, որ այն, ինչ մարդկանց անտեսանելի էր, կենդանիները շատ լավ տեսնում էին։

Փղերի ոռնոցը կենդանաբանական այգու բոլոր աշխատողներին անհանգստացրեց։ Եվ բոլորը՝ դիրեկտորի գլխավորությամբ վազեցին փղերի մոտ։ Փոկերն էլ մյուս կողմից սկսեցին ձայնակցել փղերին։ Իսկ փոկերը, ինչպես հայտնի է, նախ շատ հեզոր կենդանիներ են և շատ ծիծաղելի մնջատոց են հանում։

Դիրեկտորն արդեն գլուխը կորցրել էր և չգիտեր ինչ անի։



«Իսկ գուցե փղերն ու փոկերը հիվանդացե՞լ են»,— մտածեց նա և անմիջապես կարգադրեց բժիշկ կանչել։

Ահա, այսպիսով միայն Ֆիլոմենան մնաց վանդակի մոտ։ Ամուր բռնած վանդակի ճաղերից նա աշխատում էր հոլանդերենով խոսել առյուծների և ինչ-որ հիմար բաներ էր բլբլում։ Նա չէր նկա-

(Շարունակությունը՝ 34-րդ էջում)

# ՏԻԵԶԵՐՔԻ



Կալինինգրադի սովորաբար խաղաղ ու անմարդ «Ռեմոնտնայա» փողոցում այդ օրերին արտակարգ աշխուժություն էր տիրում: Քաղաքի բոլոր կողմերից այստեղ էին շտապում պլակատներով ու ծաղիկներով դպրոցականներ, բանվորներ ու ծառայողներ, ծերեր ու երիտասարդներ:

Կատարվել էր մի հրաշք, անսպասելի, հեքիաթային մի հրաշք: Բայց շատերի հիշողության մեջ դեռ բոլորովին թարմ էր այն շիկահեր, պեպենոտ աշխույժ ու կայտառ տղան, որ վազվզում էր ընկերների հետ, զբոսանքներ կատարում գետի ափին, և ինքնաշեն հեծանիվով ինքնատիպ մրցումներ անցկացնում: Այո, այդ բոլորը կարծես դեռ երեկ էր: Իսկ այսօ՞ր: Այն փոքրիկ նկարիչը, որը ընկերների և ուսուցիչների կարծիքով ուրիշ ընտրություն չուներ, բացի նկարչական ակադեմիայից, փայփայել էր մի ա՛յլ երազանք, և թեպետ վրձիններն ու ներկապնակը մինչև այսօր էլ իր մշտական ընկերներն էր համարում, էլի նա ընտրեց իր համար մի ավելի նվիրական ճանապարհ:

«Լա՛վ եմ: Թռչո՛ւմ եմ: Սովորո՛ւմ եմ: Նկարո՛ւմ եմ: Մայիսի 10-ին իրականացավ իմ ամենամեծ երազանքը, ինքնուրույն թռիչք կատարեցի: Պատկերացնո՞ւմ ես, առանց մի թելադրանքի, առանց օգնության մի այդպիսի բարդ մեքենա եմ ղեկավարում: Արդեն մեկ ամբողջ շաբաթ է, որ ամենաերջանիկ մարդն եմ: Իսկ որքա՜ն հաճելի է ճախրել երկնքում, քաղաքների վրայով: Ուղղակի կարծես հեքիաթում լինես: Եվ դա ինչպե՜ս ինձ հաջողվեց...»

1955 թվականին Ալեքսեյ Լեոնովը այսպես էր գրում իր ընկերներին:

Այն ժամանակ, նրա երևակայությունից անգամ դուրս էր այսօրվա իրականությունը...

... Տիեզերակայան, 1965 թվական, մարտի 18: Այստեղ է հավաքվել պանծալի տիեզերագնացների ամբողջ ընտանիքը՝ Յու. Գագարինը, Գ. Տիտովը, Ա. Նիկոլաևը, Պ. Պոպովիչը, Վ. Նիկոլաևա-Տերեշկովան, Վ. Կոմարովը, Կ. Ֆեոկտիստովը, Բ. Եգորովը, տիեզերագիտության ինժեներ, կոնստրուկտորներ, գիտնականներ և շատ ու շատ ուրիշներ: Բոլորն արդեն իրենց հրաժեշտի և բարեմաղթությունների խոսքն ասել են տիեզերանավի անձնակազմին՝ Պավել Իվանովիչ Բելյաևին և Ալեքսեյ Արխիպովիչ Լեոնովին, որոնք ավարտելով վերջին նախապատրաստությունները՝ զբաղեցրել են իրենց տեղերը:

Վերջին վայրկյաններն են մնացել: Բոլորի սրտերը արագ են բաբախում:

— Ես չգիտեմ ինչո՞ւ եմ այսպես անհանգիստ, նույնիսկ իմ թռիչքից առաջ այսպես չեմ եղել, — ասում է Յուրի Գագարինը իր կողքին կանգնածին:

Հանկարծ օդը ցնցվեց, լսվեց մի ուժգին պայթյուն և մի սուլոց: Մի ակնթարթ միայն երկնակամարում փայլատակեց ինչ-որ բան և բոլորովին անհետացավ... և դեռ չէր դադարել թռիչքի հռընդյունից առաջացած չոր խոտերի սոսափյունը, երբ արդեն լսվեց տիեզերանավից հաղորդած ձայները.

— Ամեն ինչ կարգին է...

— Ինքնազգացողություններս լավ է...

— Մեր առջև դրված խնդիրները կկատարենք ինչպես հարկն է:

Ամենուրեք միացվում են ռադիոընդունիչները... Ութերորդ անգամ է, որ մարդկությունը ապրում է այդպիսի ցնծության ու սպասումի անհանգիստ

# ՃԱՄՓԱՆԵՐՈՎ



Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

վայրկյաններ, ժամեր, օրեր... Սակայն այս ցնծությունը նման չէր նախորդներին, այդպիսի ցնծություն էր առաջին անգամ, Յուրի Գագարինի կատարած թռիչքի ժամանակ: Ճիշտ է, մեր քաջարի տիեզերագնացներից յուրաքանչյուրը տիեզերքի ուսումնասիրման գործում հերթական կարևոր քայլ է կատարել, սակայն Յուրի Գագարինը առաջինն էր, որ ամբողջ աշխարհի հայացքը դեպի երկինք սևեռեց՝ զարմանք ու ցնծություն պատճառելով բոլորին: Եվ եթե Գագարինը այդ կատարեց տիեզերանավով, ապա այժմ Ալեքսեյ Արխիպովիչ Լեոնովը դարձյալ առաջին մարդն է, որ դուրս է գալու տիեզերքի անհուն տարածություն հատուկ սկաֆանդրով, որը մեր փառապանծ գիտնականների հերթական նվաճումն է հանդիսանում, և իր դիտումներն ու նկարահանումները կկատարի ոչ թե տիեզերանավի ներսից, սահմանափակ հնարավորությունից, այլ՝ դրսից, որտեղ նրա աչքերի առաջ կբացվի ավելի լայն տեսադաշտ: Նա կդիտի տիեզերանավի արտաքին կողմը թռիչքի ժամանակ և հենց ինքն էլ այդ տիեզերանավի կողքից կընթանա նույն արագությամբ՝ ժամում 28000 կմ: Եվ ահա թերևս հենց այդ էր պատճառը, որ անհամբեր սպասում էր ժողովուրդը, սպասում մի նո՛ր իրադարձության: Սպասում էր նաև տիեզերանավի հրամանատարը՝ Պավել Իվանովիչ Բելյաևը: Վայրկյանները երկարեցին նաև նրա համար:

Ալեքսեյ Արխիպովիչ Լեոնովը արդեն դուրս էր եկել տիեզերանավից, նա ճախրում էր անհունության մեջ, նոր ճանապարհ բացելով հետագա սերունդների համար: Նա, այդ հանգիստ և հավասարակշռված բնավորության տեր մարդը՝ մինչև տիեզերագնացությունը օդային թռիչքների գագաթնակետին արդեն հասած Պավել Բելյաևը, որը թռիչքից առաջ անգամ չէր անհանգստացել, այժմ մտահոգվում էր ընկերոջ համար: Չէ՞ որ մեծ էր իր պարտականությունը, նա պետք է ղեկավարեր և՛ տիեզերանավը, և՛ Ալեքսեյ Լեոնովի դուրս գալը...

Բոլորի հույսերն արդարացան, կատարվեց աներևակայելին: Պավել Իվանովիչ Բելյաևը և Ալեքսեյ Արխիպովիչ Լեոնովը ճշտությամբ կատարելով իրենց վրա դրված խնդիրները՝ բարեհաջող վայրէջք կատարեցին, գործի շարունակությունը թողնելով հետագա սերունդներին:

Եվ մեզ մոտ դեռ որքա՜ն շատ կան լուռ և աղմըկոտ փողոցներ, որտեղ վազվզում են բազմաթիվ երեխաներ, որոնք կգնան արդեն հայտնի դարձած ճանապարհով և հենց այնտեղ փառքի հուշարձաններ կկանգնեցնեն այդ դժվարին ուղին հայտնաբերողների հիշատակին:

*ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ*



# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

## դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Ոչ բոլոր պարտիաներում է, որ պայքարի ելքը վճռվում է արքայի վրա կազմակերպված գրոհով։ Հաճախ լարված խաղը հակառակորդներից մեկի նյութական գերակշռությանն է հանգեցնում, որը, սակայն, սակավափորձ շախմատիստների ձեռքում այնուամենայնիվ վճռական դեր չի խաղում։ Հետզհետե, անհրաժեշտ փորձի կուտակմամբ և տակտիկական տեսողության բարելավմամբ, գերակշռությունը դառնում է պարտիայի արդյունքը առանց դժվարության կանխորոշող գործոն։

Ավելի դժվար է լինում խնդիրը, երբ նյութական առավելությունը աննշան է կամ դիրքի

---

(Սկիզբը՝ 29-րդ էջում)

տել, որ կողքին՝ ծառերից հետաքրքրությամբ իրեն են նայում փոքրիկ կապիկները (օրինակելի վարքի համար նրանց թույլ են տվել թափառել այգում)։ Կասկած չկար, որ նրանք էլ լավ գիտեին, թե ով է Ֆիլումենան, և վճռել էին անմիջապես օգնության հասնել առյուծներին, ինչպես նաև Կարոլինկային և Պետրիկին։ Առիթից օգտվելով, որ կենդանաբանական այգու դիրեկտորն ու հսկիչները գնացել են փղերի և փոկերի կողմը, կապիկները կայծակի արագությամբ հարձակվեցին Ֆիլումենայի վրա։ Նրանցից երկուսը ծառից ուղիղ ցատկեցին Ֆիլումենայի ծիծաղելի գլխարկի վրա և այնպես քաշեցին աչքերին, որ Ֆիլումենան այլևս ոչինչ չէր տեսնում։ Փղերի համերաշխ երգչախումբը բոլորովին խլացնում էր Ֆիլումենայի աղաղակը։

Օգտվելով դրանից՝ կապիկները իսկույն բաց արին վանդակի դուռը։ Այդ էլ հենց պետք էր։ Փոքրիկ առյուծները ճարպկորեն դուրս ցատկեցին վանդակից։

— Պան Պրեզիդենտի հետ արագ վազեք դեպի մեքենան, իսկ մենք կհասնենք ձեր հետևից,— հրամայեց Պետրիկը։

Եվ առյուծները պան Պրեզիդենտի հետ վազեցին դեպի այգու հետևի մուտքը, իսկ Կարոլինկան ու Պետրիկը սկսեցին Ֆիլումենայով զբաղվել։ Նրան բաց վանդակի մեջ հրելը մի րոպեի գործ էր։ Իսկ կապիկներին այդ միտքն այնքան դուր եկավ, որ սկսեցին ճյուղից-ճյուղ ցատկել։

Ֆիլումենան կատաղությունից դես ու դեն էր ցատկում՝ ճանկերի նման մատները չռած. այդ վիճակում նա մի շատ տարօրինակ գազանի տեսք ուներ։ Իսկ հետո նա ցատկեց վանդակի մեջ կախված չոր ճյուղին և ոտքերով կախ ընկավ նրանից։ Այդ ժամանակ նրա քիթը նորից առաջվա նման երկարեց, իսկ մազերը մինչ այդ էլ արդեն խճճված էին ու գզգզված։

— Հիմա փախչե՛նք,— ձայն տվեց Կարոլինկան։

— Փախչե՛նք,— կրկնեց Պետրիկը։ Մինչ այդ նա արդեն հասցրել էր ջնջել վանդակի վրա փակցրված ցուցանակի «առյուծներ» բառը և գրպանում գտած կարմիր կավիճով գրեց. «տարօրինակ գազան»։

Կապիկների ճիչ ու աղմուկի տակ նրանք նորից հեծան ուղտերին և քիչ հետո հայտնվեցին դարպասների մոտ, որտեղ Պրեզիդենտը՝ առյուծների հետ նրանց էր սպասում։ Առյուծները հնազանդորեն թաքնվել էին մեքենայի հետնամասում՝ այնտեղ, ուր իրերն են դնում։

— Դե, ուրեմն շարժվե՛նք,— բացականչեց Պրեզիդենտը և սեղմեց ստարտերը։

— Մի րոպե,— կանգնեցրեց նրան Պետրիկը,— ինձ թվում է, որ ճիշտ չէ...

— Էլի՞ ինչ-որ բան է պատահել,— վախեցած հարցրեց Պրեզիդենտը։

— Ինձ թվում է, որ Ֆիլումենայի վանդակի ցուցանակի վրա գրելիս սխալ եմ թույլ տվել։ Ասացեք խնդրեմ, ինչպե՞ս է գրվում «տարօրինակ» բառը՝ «օ»-ո՞վ, թե՞ «ո»-ով։

— Մի րոպե, մի րոպե,— սկսեց մտածել Պրեզիդենտը,— իմ կարծիքով...

Բայց այդպես էլ խոսքը մնաց նրա բերանում, որովհետև նորից լսվեցին շչակների ականջ ծակող սուլոցները։

— Փախչե՛նք,— ճչաց Պետրիկը, և կարմիր մեքենան ակնթարթորեն պոկվեց տեղից։

(Շարունակելի)

առանձնահատկությունները դժվարացնում են օգտագործել նյութական գերակշռությունը:

Այժմ խոսենք շախմատային պարտիայի եզրափակիչ փուլի՝ վերջնախաղի (էնդշպիլ) մասին: Այդ բնագավառի կարևորությունը ընդգծելու համար բերեմ շախմատային մի ճշմարտություն. վերջնախաղը վատ իմացող շախմատիստը աշխարհի չեմպիոն դառնալու հույս չի կարող ունենալ: Միգուցե աշխարհի չեմպիոն դառնալ ցանկանում են ձեզանից ոչ բոլորը. սակայն յուրաքանչյուր շախմատիստի համար շախմատային տեխնիկայի հիմունքների հետ ծանոթանալը անհրաժեշտ է: Վերցնենք, օրինակ, ուժերի այսպիսի հարաբերակցություն:

## ԹԱԳՈՒՀԻՆ ԶԻՆՎՈՐԻ ԴԵՄ



Այստեղ, ինչպես նաև բոլոր այն դեպքերում, երբ թույլ կողմի զինվորը կասեցվում է թագուհով, հաղթանակի հասնելը որևէ դժվարություն չի ներկայացնում: Դրա համար բավական կլինի մոտեցնել արքան, որպեսզի միացյալ ուժերով ոչընչացվի հակառակորդի վերջին հույսը՝ զինվորը:

Ավելի դժվար է հաղթանակի հասնել, երբ զինվորը հասել է նախավերջին հորիզոնականին, իսկ թագուհին գործում է թիկունքից:



Միայն թագուհով հաջողության հասնել անհնարին է: Միևնույն ժամանակ, զինվորը թագուհու փոխարկելը՝ ունալ է: Հիշեցեք, որոշ կոնկրետ խնդրի հետ չկապված շախ հայտարարելը, հակառակորդի ճիշտ խաղի դեպքում՝ հաջողության չի հասցնի: Անհրաժեշտ է որոշակի մեթոդ ու գործողության պլան նախատեսել և աշխատել այն իրականացնել:

Եթե ուշադրությամբ ծանոթանանք դիրքի բովանդակությանը, կարելի է նկատել, որ սև արքայով e1 դաշտը գրավելու դեպքում, նա իր զինվորի ճանապարհը կփակի, և սպիտակները կկարողանան իրենց արքան մոտեցնել: Հարցը նրանումն է, թե կկարողանա՞ն արդյոք սպիտակները սև արքային ստիպել գրավելու «ոչ ձեռնտու» e1 դաշտը: Այո, դա հնարավոր է և դրան կարելի է հասնել հետևյալ կերպ. 1... Աg2 2. Թe6 Աf2 3. Թf5+ Աg2 4. Թe4+ Աf2 5. Թf4+ Աg2 6. Թe3 Աf1 7. Թf3+ Աe1: Միակ քայլն է, այլապես զինվորը ոչնչացվում էր: Սպիտակները կատարեցին պլանի առաջին մասը՝ սև արքային «քշեցին» e1 և այժմ արքայով կարող են շարժվել առաջ: 8. Աg7 Աd2 9. Թd5+ Աe3 10. Թe5+ Աd2 11. Թd4+ Աc2 12. Թe3 Աd1 13. Թd3+ Աe1 14. Աf6: Եվս մեկ քայլ առաջ: 14... Աf2 15. Թf5+, և հետո արդեն ծանոթ մեթոդով:

Սակայն նման խաղավերջերում ամեն բան՛ այդքան էլ հեշտ չէ և միշտ չէ, որ կարելի է հաղթել, երբ զինվորը հասել է նախավերջին շարքին: Եթե խաղատախտակի վրա փղի գծի զինվորն է մնացել, այսինքն «c» կամ «f», իսկ ուժեղ կողմի արքան գտնվում է հեռու դիրքում, ապա խաղը շահել անհնարին է:



Թվում է, թե սպիտակները ձեռք բերեցին ցանկացած դիրքը, սակայն 1... Աh1 քայլով սևերը փրկվում են, որովհետև սպիտակների 2. Թ:f2 պատասխանից հետո կստացվի պատ: Ոչ-ոքի կլինի նաև, եթե թույլ կողմի զինվորը գտնվի եզրային ուղղաձիգի վրա, այսինքն՝ «a» և «h» գծերի վրա:



1... Աa1! Սպիտակները արքան մոտեցնել չեն կարող, որովհետև ստացվում է պատ՝ ոչ-ոքի:

Իսկ այժմ քննարկենք մի

Չորս դեպքեր, որոնք կազմում են բացառություններ:

Չնայած փղի գծի զինվորը նախավերջին հորիզոնականի վրա է գտնվում, այնուամենայնիվ սևերը պարտվում են, որովհետև սպիտակ արքան մոտ է սև ֆիգուրներին: Պայքարը այսպիսի բնույթ է կրում. 1. Թd4+ Աe2 2. Թc3 Աd1 3. Թd3+ Աc1 4. Աc4 Աb2 5. Թd2 Աb1 6. Աb3 c1Թ 7. Թa2×: Եթե սկզբնական դիրքում սև արքան «b2» դաշտի վրա գտնվեր, խաղը ոչ-ոքի կավարտվեր: Հետաքրքիր է հետևյալ դիրքը.

1. Թa2+ Աb1 2. Աb4 a1Թ: Ոչ-ոքի՞. չէ՞ որ խաղատախտակի վրա նյութական հավասարակշռություն է: Պարտիայի արդյունքի մասին կտրական եզրակացություն անել պետք չէ: Սև ֆիգուրները սեղմված են անկյունին, որտեղ նրանց մարտունակությունը նվազագույնի է հասցված: Քայլի հերթը սպիտակներինն է և 3. Աb3! հետո սևերը պետք է հանձնվեն:

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» №. 3

«Անսովոր ծանրություն» — Վիկտորիա: Դանթարչյան: 24 տարեկան: Հակոբ: Սողոմոնյան: Օրենբուրգ: Երեք: 27 տարեկան: Վենետիկ: Վարշավա: Թեոդոսիա: Փիմիկոս: Մաթեմատիկա:

«Հանելուկներ» — Աչքեր: Փուշ: Մեղվի փեթակ: Ձու: Կայծակ: Օձ: Անուն:

ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝

Անժիկ Բաբայանը (Երևան), Լյուդմիլա Դանիելյանը (Կիրովական), Դավիթ Ասլանյանը (Երևան):

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՄԻՀՐԱՆ ՍՈՍՈՅԱՆԻ


Խմբագիր՝ ՍԱԳ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶԱՅԱՆ ԴՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱՂԱՆԹԱՐՅԱՆ Վ.

**Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки. № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2-41-83, 2-59-06:

ՎՖ 07683, Պատվեր՝ 934, Տպաքանակ՝ 17 700, Ծավալը՝ 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 13/V 1965 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91: Գինը 20 կ.

## ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

# ՀԱՆՃԱՐԵՂ ԳԻՏՆԱԿԱՆԸ



Այն ժամանակ բոլորին հրաշք թվաց, երբ իմացան, որ հեռավոր Սպիտակ ծովի ափերին, Միշանինսկայա գյուղում, ձկնորսի ընտանիքում ծնված մի մարդ դարձել է... ակադեմիկոս։ Այդ հրաշագործ տղայի անունը Միխայիլ էր, ազգանունը՝ Լոմոնոսով։

Ճորտատիրական Ռուսաստանի ոչ միայն գյուղերում, այլև շատ քաղաքներում դպրոցներ չկային։ Կալվածատերերը իրենց զավակներին նախնական կրթություն էին տալիս տերտերների ու տիրացուների մոտ, երբեմն էլ տընային դասատուներ էին վարձում, իսկ գյուղացիները հազիվ իրենց գլուխն էին պահում, մտքներով էլ չէր անցնում զավակներին ուսման տալ։

Բարեբախտաբար Միշանինսկայա գյուղում կային մի քանի գրագետ մարդիկ, որոնցից մեկն էլ Լոմոնոսովենց մոտիկ հարևանն էր։ Իվան Աֆանասևիչին շատ էր դուր եկել փոքրիկ, սրամիտ Միխայլոն, որ գալիս էր ամեն օր, իր խաժ աչքերը հառում գրքերին ու կարոտով հեռանում։ Շուտով քեռի Իվանը նվիրեց Միխայլոյին մի փետուրե գրիչ, գրելաթուղթ և մի մաշված ժամագիրք ու սովորեցրեց առաջին տառը։

Միխայլոյի ուրախությանը չափ չկար։ Քեռի Իվանն էլ իր հերթին չափազանց գոհ էր, որ Միխայլոն իրենից առանձին ջանքեր չի պահանջում, մի անգամ լսածը էլ երբեք չի մոռանում։ Միխայլոն չէր բավարարվում միայն քեռի Իվանի տված դասերով. նա սովորում էր նաև իր հասակակից պատանիներից, որոնք ուսանում էին տերտերի կամ տիրացուի մոտ, սովորում էր տերտերից, տիրացուից և գյուղում եղած մյուս գրագետներից։ Ոչ ոք չէր գլանում օգնել ուշիմ, հարցասեր պատանուն, որը կարճ ժամանակամիջոցում գրելկարդալ էր սովորել, ողջ ժամագիրքը անգիր արել և լուծում էր թվաբանական բարդ խնդիրներ։

Բայց Միխայլոյի ճամփին կար մի ավելի զորեղ խոչընդոտ։ Վաղ հասակում նա զրկվել էր մորից, իսկ խորթ մայրը մի անգութ, չարասիրտ կին էր։ Մի օր նա իր ամուսնուն ասաց.

— Աչքներս լո՜ւյս... տղադ ողջ օրը ժամագիրք է կարդում ու թղթեր մրոտում. տերտե՞ր է դառնալու, թե՞ փիլիսոփա... Իր հասակի տղաները նավակ են քշում, ձուկ որսում, իսկ սա...

Հայրը խոժոռ հայացքը սևեռեց իննամյա տղայի վրա ու կարգադրեց.

— Պատրաստվի՛ր այսուհետև հետս ծով դուրս գալու...

Միխայլոյի հայրը՝ Վասիլին, ունևոր ձկնորս էր, Արխանգելսկի նահանգում առաջինը նա էր պատրաստել հոլանդական տիպի արագասահ մի նավակ, որը կոչել էր Ջայկա։ Հայր ու տղա Ջայկայով սլանում էին դեպի Սպիտակ ծովի, հաճա՜խ էլ Սառուցյալ օվկիանոսի ձկնառատ վայրերը։ Միխայլոն հպարտանում էր, որ վերջապես տղամարդ է դարձել և օգնում է հորը, թեթևացնում է նրա ուսերին դըրված ծանր բեռը։ Երեկոյան, երբ տուն էին դառնում, նա մինչև ուշ գիշեր կարդում էր քեռի Իվանի տված նոր-նոր գրքերը, կատարում թվաբանական վարժություններ։

Անցավ այսպես մի քանի տարի։ Հայրը ուրախ էր, որ տղան իրեն պիտի փոխարինի և վառ պահի իր տան ճրագը։ Բայց Միխայլոն բնությունից կոչված չէր ձկնորս դառնալու։ Նրան վիճակված էր դառնալ իր ժամանակի մեծագույն գիտնականը և իր մտքի ճառագայթներով ցրել ողջ Ռուսաստանի դարավոր խավարը։

1830 թվականին, դեկտեմբերյան ցուրտ մի գիշեր, 19-ամյա ձկնորս Միխայլոն ձուկ տեղափոխող սայլապաններին հետ ճամփա ընկավ դեպի Մոսկվա, դեպի գիտության բարձունքները։ Չափազանց դժվարին, նույնիսկ անհասանելի էր թվում այդ ճանապարհը մի գեղջուկ պատանու համար, որը չուներ նախնական կանոնավոր կրթություն, ազնըվական ծագում և որի առջև փակ էին բարձրագույն կրթության դռները։ Իսկ եթե մի հրաշքով բացվեին անգամ, նա չուներ ապրուստի միջոց։ Հայրը հրաժարվել էր հոգալ նրա ուսման ծախսերը. գրպանում միայն 3 ռուբլի կար, որը բարի մաղթանքների հետ տվել էր քեռի Իվանը։

Եվ սակայն, համառ ու անխոնջ պատանին կարողացավ հաղթահարել բոլոր տեսակի դժվարությունները, որ ընկած էին գիտության ճանապարհին։ Նա դարձավ ոչ միայն ռուսական, այլև արտասահմանյան երկու ակադեմիաների պատվավոր անդամ։

Լրացավ ռուս հանճարեղ գիտնական, նշանավոր բանաստեղծ և լուսավորիչ Միխայիլ Վասիլևիչ Լոմոնոսովի մահվան երկու հարյուր տարին։

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

